# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**4**

ԱՊՐԻԼ, 1984
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении


## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն




ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ԼԵՆԻՆՅԱՆ ԴՐՈՇՈՎ ԴԵՊԻ ՆՈՐԱՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՈՒՆԸ, նրա ուսմունքն ու գործը սովետական ժողովրդի, ժամանակակից առաջադեմ մարդկության դրոշն է, հասարակական առաջընթացի փարոսը:

Վ. Ի. Լենինի ստեղծագործող միտքը, երկաթյա տրամաբանությունը, դատողությունների, եզրահանգումների, գործողությունների համարձակությունն ու նպատակասլացությունը, փոթորկուն հեղափոխական կրքոտությունը և ամենամարդկային մարդկայնությունը մեզ համար կյանքի չափանիշ են, այսօրվա մեր գործերի խարիսխն ու սատարը: Լենինյան գաղափարներով է մեր կուսակցությունը կողմնորոշում իր ստրատեգիան, մշակում ապագայի ծրագրերը, հաստատակամորեն ու հետևողականությամբ կենսագործում առաջնորդի պատգամները:

Կոմունիստական կուսակցության լենինյան քաղաքականությունն իր հստակ արտահայտությունը գտավ ՍՄԿԿ XXVI համագումարում, նրան հաջորդող Կենտկոմի պլենումներում:

Ինչպես Վ. Ի. Լենինն էր միշտ խորհրդակցում Մարքսի ու Էնգելսի հետ, իր եզրահանգումները ստուգում գիտական կոմունիզմի ռահվիրաների հիմնադրույթներով, այնպես էլ կոմունիստական կուսակցությունն իր բոլոր գործերն ու ծրագրերը մշակելիս խորհրդակցում է մեծ առաջնորդի հետ:

Վերջերս ավարտված ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը այդ հիմնարար սկզբունքի վառ դրսևորումներից մեկը եղավ: Պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոյի ծրագրային ելույթը, պլենումի նյութերն ու որոշումները ամբողջովին խարսխվում են Լենինի հիմնադրույթների վրա: Պլենումը մեկ անգամ ևս դրսևորեց կուսակցության և սովետական ժողովրդի կուռ միասնությունը, մեր վճռականությունը ընթանալու Լենինի նախանշած կուրսով:

Կուսակցության և ժողովրդի հզոր համախմբվածությունը մեկ անգամ ևս իր հաստատումը գտավ տասնմեկերորդ գումարման ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրություններին: Ավելի քան 184 միլիոն մարդ իրենց քվեներով միահամուռ վստահության ուղեգիր տվեցին կոմունիստական կուսակցության լենինյան քաղաքականությանը: Ընտրությունները վկայեցին սովետական դեմոկրատիայի կենսահաստատ ուժը, մեր երկրի ժողովուրդների անխորտակելի բարեկամությունը, մեր ապրելակերպի հաղթանակը, վաղը օրվա նկատմամբ սովետական մարդու լուսավոր հավատը: Նորընտիր Գերագույն սովետի առաջին նստաշրջանը, նրա ընդունած որոշումները հենց այս ամենի արտացոլումը եղան:

Լենինը նոր դարաշրջան բացեց Մարքսի և Էնգելսի ուսմունքի մեջ: Իմպերիալիզմի, սոցիալիստական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի, բանվոր դասակարգի կուսակցության— նոր տիպի կուսակցության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար պայքարում պրոլետարիատի դասակարգային դաշնակիցների, սոցիալական և ազգային ազատագրության անքակտելի կապի մասին լենինյան ուսմունքը հզոր գաղափարատեսական և մեթոդաբանական զենք դարձավ բոլոր երկրների հեղափոխականների համար: Կարևորագույն սկզբունքային նշանակություն ունեն լենինյան գաղափարները սոցիալիստական հայրենիքի պաշտպանության, տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքների վերաբերյալ:

Լենինիզմը իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանի, գաղութատիրության քայքայման և ազգային-ազատագրական շարժումների հաղ-

մարտին կայացած պլենումում: Խնդիրն այն է, որպեսզի պահպանենք ու զարգացնենք մեր ձեռք բերած թափը, նկատի առնելով, որ ընթացիկ տարին ըստ էության վճռական է հնգամյակի ամբողջ բախտի տեսակետից, ամենուրեք ձգտենք կենսագործել կուսակցության առաջադրանքները՝ պլանավորվածից 1 տոկոսով ավելի բարձրացնենք աշխատանքի արտադրողականությունը և 0,5 տոկոսով ավելի իջեցնենք արտադրանքի ինքնարժեքը, կիրառենք տնտեսման խիստ ռեժիմ: Ուրեմն ոչ մեկս և ոչ մի տեղամասում պիտի թույլ չտանք լարվածության թուլացում, չէ որ այս տարի ամեն մի ձախողում, ամեն մի թերացում շատ թանկ կարող է նստել ամբողջ հնգամյակի հաշվով, ուրեմն և նման դեպքերում պատասխանատվությունը կլինի շատ ավելի մեծ, քան երբևէ:

Նոր հասարակության հզոր ստեղծարար ուժը կուսակցության և ժողովրդի միասնությունն է: Սա իր հիմքում ունի օբյեկտիվ բնույթ, քանի որ կուսակցության ծրագիրը ամբողջովին հետապնդում է աշխատավոր ժողովրդի շահերը: Բայց օբյեկտիվ հիմքը միայն օբյեկտիվ նպաստավոր գործոն է, իսկ միասնությունը կառուցվում է կուսակցության նպատակային ջանքերի շնորհիվ:

Ահա թե ինչու մեր կուսակցությունը իր առաջնահերթ խնդիրն է համարում հոգ տանել ժողովրդի գիտակցականության, քաղաքական և բարոյական կուլտուրայի անընդհատ բարձրացման նկատմամբ: Ժամանակակից պայմաններում, տնտեսական և կազմակերպական հարցերի անկասկած կարևորության առկայությամբ, գաղափարական-քաղաքական դաստիարակչական աշխատանքը առավել ու առավել առաջին բնագիծ է ելնում: Դա ամբողջ կուսակցության գործն է, կուսակցության յուրաքանչյուր անդամի պարտքը: Ու եթե բացեր են լինում այդ աշխատանքում, կամ գաղափարախոսական վակուում է առաջանում մարդու գիտակցության մեջ, ապա դա լուրջ տնտեսական, բարոյական, հոգեբանական վնաս է բերում հասարակությանը: Ընդհակառակն, դաստիարակչական արդյունավետ աշխատանքը, մարդկանց կողմից կուսակցության քաղաքականության խոր գիտակցումն ու յուրացումը սոցիալիստական շինարարության բոլոր տեղամասերում անդրադառնում են որպես վստահ առաջխաղացում:

Սոցիալական պրակտիկան նորանոր, բարդ խնդիրներ է առաջադրում գաղափարախոսությանը: Բայց բոլոր այդ խնդիրների մեջ անփոփոխը գիտական, մարքսլենինյան աշխարհայացքի ձևավորումն է: «Հենց դա է կոմունիստներին, աշխատավորությանը դարձնում գիտակցական քաղաքական մարտիկներ, որոնք ունակ լինեն ինքնուրույնաբար գնահատելու սոցիալական երևույթները, տեսնելու ընթացիկ խնդիրների կապը մեր վերջնական նպատակների հետ, վարելու փաստարկված վիճաբանություն գաղափարական որևէ հակառակորդի հետ» (Կ. Ու. Չեռնենկո):

ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումը հատուկ խնդիր դրեց գաղափարախոսական բոլոր միջոցներով, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բոլոր լծակներով, բանավոր ու գրավոր պրոպագանդայի ամբողջ զինանոցով ապահովել մեր սոցիալ-տնտեսական զարգացման ծրագրի կատարումը: Միաժամանակ, անհրաժեշտ է հենց սոցիալ-տնտեսական անխափան գործունեությամբ ապահովել քաղաքական-դաստիարակչական ծրագիրը: Պարզից էլ պարզ է, որ չի կարող լինել նոր հասարակության սոցիալ-տնտեսական բազա, առանց այդ բազան տնօրինող նոր մարդու:

Դաստիարակչական ամբողջ գործունեության մեջ կենտրոնական տեղ է գրավում աշխատանքային դաստիարակությունը, աշխատանքի նկատմամբ հարգալից վերաբերմունքի դաստիարակումը: Ժողովրդի իրավացի զայրույթն են հարուցում ծույլերը, օրապակաս աշխատողները, հարբեցողները: Պետք է ամենուրեք ձևավորել և ամրապնդել աշխատանքի նկատմամբ հարգալից վերաբերմունքի մթնոլորտ և ամենուրեք էլ անհանդուրժողականություն, արհամարհանքի մթնոլորտ ստեղծել պարապ-սարապության, թափթփվածության, անպատասխանատվության ամեն կարգի դրսևորման նկատմամբ:

Միևնույն ժամանակ, հարկ է հոգ տանել ազնիվ, ամբողջովին գործին նվիրված մարդկանց մասին: Մեր հասարակարգի հիմքում նախադրված է սոցիալական արդարության սկզբունքը: Սա բնավ չի նշանակում համահարթում: Ընդհակառակն, սա նշանակում է, թե լավ աշխատողը պետք է ավելի լավ ապրի: Ուրեմն և խիստ կա-



րևոր է, որպեսզի այդ սկզբունքը կիրառվի անհողդողդ մեր բոլոր առօրյա գործերում՝ աշխատավարձի թե հավելյալ վճարների մեջ, բնակարանների թե ուղեգրերի բաշխման հարցում, պարգևատրումների թե այլ խրախուսումների դեպքում, մի խոսքով, որպեսզի ամեն ինչ արվի իրոք արդարությամբ, ընդհանուր գործում յուրաքանչյուրի աշխատանքային անձնական լումայի չափով ու դրան համապատասխան:

Մեր կուսակցության, ամբողջ հասարակության համար խիստ կարևոր է, որպեսզի մարդը, հատկապես երիտասարդը, լինի ոչ թե պարզապես որոշակի գիտելիքներ կրող, այլ առաջին հերթին դաստիարակվի որպես սոցիալիստական հասարակության քաղաքացի, կոմունիզմի ակտիվ կառուցող, համապատասխան գաղափարական, բարոյական արժանիքներով, աշխատանքի և վարքի բարձր կուլտուրայով: Դրան կարելի է հասնել ուսումնառության և արտադրական աշխատանքի միավորումով: Դպրոցական ռեֆորմը, որը հավանության արժանացավ Կենտկոմի ապրիլյան պլենումում և օրենքի ուժ ստացավ Գերագույն սովետի նստաշրջանում, հենց այդ նպատակն է հետապնդում: Դպրոցի բարեշրջման համաժողովրդական քննարկումը ցայտուն օրինակ եղավ այն բանի, թե ինչպես են կոմունիստական կուսակցությունն ու սովետական իշխանությունը դնում ու լուծում համապետական նշանակության հարցերը, եղավ իրական դեմոկրատիայի վկայություն:

Կուսակցության Կենտկոմի ապրիլյան պլենումը մեր բոլորիս ուշադրությունը հրավիրեց մի կարևոր կետի վրա: «Սովետական երիտասարդները,— ասաց ընկ. Կ. Ու. Չեռնենկոն,— ինքնուրույն կյանք պետք է մտնեն որպես բարձրակիրթ, կուլտուրական և աշխատասեր մարդիկ: Եվ ինչ էլ որ դառնան մեր զավակները՝ բանվոր թե գյուղատնտես, գիտնական թե ինժեներ, նրանք պետք է դասակարգային կոփվածք ստանան մեր աշխատավորական կոլեկտիվներում: Պետք է հասնել այն բանին, որ արտադրությանը նրանց ծանոթանալը տա դաստիարակչական հենց այն արդյունքը, որ մեզ հարկավոր է»: Եվ հետո, ավելացրեց. «Այսօր ամբողջ ուսումնական պրոցեսը պետք է անհամեմատ մեծ չափով դառնա աշխարհայացքային բովանդակություն կրող»:

Այսպիսի հարցադրումը իբրև ելակետ ունի նաև ժամանակակից աշխարհում կոմունիստական և բուրժուական աշխարհայացքների աննախադեպ առճակատումը: Կուսակցությունը խնդիր է դնում հարձակողական, անհաշտ գաղափարախոսական պայքար մղել դասակարգային հակառակորդի դեմ, մասնավոր սեփականատիրական ազդեցությունների, սպառողական մտայնության, քաղքենիության, եսակենտրոնության, մի խոսքով այն ամենի դեմ, ինչով բուրժուական պրոպագանդան ջանում է խաթարել մարդկանց գիտակցությունը:

Սովետական հասարակության ամբողջ կենսագործունեությունը և ընթացքը վճռաբար կախված է լենինյան կոմունիստական կուսակցության իմաստուն քաղաքականությունից: Մանավանդ հիմա, երբ զարգացած սոցիալիզմի կատարելագործումը օրակարգի հարց է դարձնում բազմաքանակ բարդ ու լայն խնդիրներ, է՛լ ավելի է անում կուսակցության ղեկավար դերը: Ժամանակը պահանջում է բոլոր կուսակցական կոմիտեներից, սկզբնական կազմակերպություններից անհամեմատ բարձրացնել կուսակցական ղեկավարման մակարդակը, կազմակերպական ու քաղաքական աշխատանքի որակը. ուշադրության կենտրոնում պահել, որպեսզի բոլոր կադրերի գործունեությունը բնութագրվի աշխատանքի լենինյան ոճով:

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ աշխատանքի արդյունավետությունն ու որակը ամուր կապված են յուրաքանչյուր աշխատողի եռանդի ու նախաձեռնության հետ: Ուրեմն կուսակցական կազմակերպությունների պարտքն է զանգվածների գիտակցությանը հասցնել մի պարզ ճշմարտություն. նախանշված ծրագրերի իրականացումը առաջին հերթին կախված է բոլորի և յուրաքանչյուրի կազմակերպվածությունից, կարգապահությունից, աշխատանքային ներդրումից:

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր կուսակցությանը խորապես ներթափանցել արտադրության էկոնոմիկայի մեջ, կարողանալ ուշադրությունը կենտրոնացնել աշխատանքի հիմնական, ամենաէական ուղղությունների վրա, կարողանալ միշտ գտնել և վեր հանել շղթայի այն օղակը, որի լուծումով և ապահովվում է ամբողջ խնդրի կատարումը:

Առաջնորդը կենսականորեն անհրաժեշտ էր գտնում աշխատանքը կադրերի հետ, որպեսզի ղեկավար ընկերները լավագույնս իմանան կառավարման գիտությունը, գի-

տեսան արտադրության պայմանները, տեղյակ լինեն իրենց բնագավառում գիտության ու տեխնիկայի նվաճումներին, որպեսզի նրանք տեսնեն սեփական քայլերի ոչ միայն կոնկրետ, պրակտիկ արդյունքները, այլև քաղաքական նշանակությունը, սոցիալական հետևանքները, դաստիարակչական փոխհատուցումը:

Լենինը սովորեցնում էր կուսակցությանը՝ մշտապես հոգ տանել սոցիալիստական դեմոկրատիայի, հասարակության ամբողջ քաղաքական համակարգի հետագա կատարելագործման մասին: Հենց այդ ոգով էլ Կենտկոմի ապրիլյան պլենումը ուշադրության կենտրոնում ունեցավ սովետների, արհմիությունների, կոմերիտմիության գործունեության բարելավման հարցերը: Խնդիր դրվեց օգտագործել կուսակցական ազդեցության բոլոր մեթոդները, որպեսզի բարձրացվի սովետների գործունեության արդյունավետությունը, վերացվեն ձևամոլության բոլոր տարրերը, որպեսզի ավելի կոնկրետ ու նպատակասլաց աշխատեն արհմիությունները, կոմերիտական կազմակերպությունները:

Զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոցեսում կուսակցության դերի անընդհատ աճը նշանավորում է նրա գործունեության բովանդակության մեջ՝ գիտության, տեսության և փորձի ավելի ու առավել սերտ միասնությունը, ձևերի ու մեթոդների մեջ՝ լենինյան ոճի ավելի ու առավել խոր արմատավորումը:

Լենինաբար, լենինյան ոճով է մեր կուսակցությունը վարում արտաքին քաղաքականությունը, որի նպատակն է ապահովել երկրի պաշտպանունակությունը, սովետական մարդկանց խաղաղ ստեղծարար աշխատանքի անվտանգ պայմանները:

Սովետական պետությունը ամուր դիրքեր ու մեծ հեղինակություն ունի աշխարհում: Մեր հայրենիքի և սոցիալիստական ընկերակցության բոլոր երկրների հետևողական խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը վայելում է աշխարհի ժողովուրդների ու առաջադիմական ուժերի լայն հավանությունն ու համակրանքը:

Պատասխանելով «Պրավդա» թերթի հարցերին, ընկ. Կ. Ու. Չեռնենկոն մեկ անգամ ևս շեշտեց, որ եթե ԱՄՆ-ը հրաժարվի ռազմական գերակայության հասնելու փորձերից, վերադառնա մինչև Եվրոպայում հրթիռների տեղադրման կացությանը, ապա հնարավոր են բանակցությունները: «Մեր երկիրը չի ձգտում գերակայության,— հայտարարեց նա,— բայց չի էլ թույլ տա նման բան իր նկատմամբ»:

Արևմուտքը, ըստ էության, ոչ մի հստակ պատասխան չի տալիս ՍՍՀՄ-ի նախաձեռնություններին, թեպետ վերջերս սկսում են հնչեցնել խաղաղասիրական ֆրազներ, բայց այդ քողի տակ շարունակում են հրթիռների տեղադրումը: Անկասկած, դա հղի է մեծ վտանգներով Եվրոպայի ժողովուրդների համար: Եվ պատահական չէ, որ շատ երկրներում անհագնացող թափով աճում է հակապատերազմական շարժումը, որը մեր օրերում դարձել է լուրջ քաղաքական գործոն: Ժողովուրդները ավելի ու ավելի հստակ են ըմբռնում, որ իրենց ուսերին վիթխարի պատասխանատվություն է ընկնում երկրագնդի ու մարդկության բախտի համար:

Ներկայումս նորովի է իմաստավորում իր խնդիրները նաև բանվորական ու կոմունիստական շարժումը, գլխավորների շարքը դասելով խաղաղության ապահովումը և մարդկային քաղաքակրթության պահպանումը: Ընդսմին, այդ շարժումը հենվում է Լենինի հայտնի դրույթի վրա, թե խաղաղությունը ինքնաբերաբար չի գա, առանց պայքարի չի հաջողվի: «Խաղաղությունը չի կարող ազդարարվել միայն վերից: Խաղաղության պետք է հասնել վարից»— սովորեցնում էր Վ. Ի. Լենինը:

Սովետական մարդիկ խորապես հավատում են, որ բանականության ուժերը վերջիվերջո կհաղթեն, որ կհաջողվի իրերի ընթացքը ետ դարձնել լիցքաթափման և խաղաղության ամրապնդման հունը, հասնել սպառազինությունների կրճատման, լրիվ վերացման:

Ներքին թե արտաքին քաղաքականությունը իրականացնելիս, զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոցեսը վարելիս ՍՄԿԿ-ն միշտ ղեկավարվում է Լենինի անմահ գաղափարներով: Լենինիզմը մարդկության հոգևոր առաջընթացի գագաթն է, այն շոշափում է արդիականության հասարակական-քաղաքական ուժերի կենսական շահերը, ճշգրիտ ու հստակ արտացոլում հասարակական զարգացման միտումը: Լենինի ուսմունքը այսօր էլ առաջնորդում է մարդկության բոլոր առաջադիմական ուժերին: Լենինի անունն անմահ է, ինչպես և անմահ է նրա գործը, նրա ուսմունքը:

---

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԻՄՆԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ԵՎ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*կոմիտեն նշում է, որ կուսակցական կազմակեր-*
*1. ՍՄԿԿ Կենտրոնական ... հաշվետվություններն ու ընտրությունները հասա-*
*պություններում ավարտված հաշվետվություններն ու ընտրությունները եղան կուսակցության ու երկրի*
*րակական-քաղաքական խոշոր իրադարձություն եղան կուսակցության ու երկրի*
*կյանքում: Դրանք ընդգրկեցին 1,6 միլիոն կուսակցական խումբ, ար-*
*տադրամասային ու սկզբնական կազմակերպություն, 4,6 հազար շրջա-*
*նային, քաղաքային, օկրուգային, մարզային և երկրամասային կուսակ-*
*ցական կազմակերպություն: Ընտրովի կուսակցական մարմինների հաշվետու*
*զեկուցումների քննարկմանը մասնակցեց ավելի քան 11,5 միլիոն կոմունիստ:*
*Հաշվետու ընտրական կամպանիան անցավ ՍՄԿԿ Կենտկոմի քաղաքական*
*հիմնադրույթներին համապատասխան, ցույց տվեց կուսակցության ղեկավար*
*դերի հետագա աճը, կոմունիստների գիտակցականության ու ակտիվության*
*բարձր մակարդակը, կուսակցության ու ժողովրդի անսասան միասնությունը,*
*նրանց համախմբվածությունը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի շուրջը, նրանց*
*վճռականությունը՝ անդուլ պայքարելու ներքին ու արտաքին քաղաքականու-*
*թյան լենինյան կուրսի կենսագործման համար: Կամպանիան դարձավ կոմու-*
*նիստների դաստիարակության լավ դպրոց, հասարակության մեջ նրանց ավան-*
*գարդային դերի բարձրացման դպրոց: Կոմունիստների գլխավոր ուշադրու-*
*թյունը կենտրոնացվում էր կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտ-*
*կոմի հետհամագումարյան պլենումների որոշումների իրականացման, զար-*
*գացած սոցիալիզմի կատարելագործման ուղղությամբ կուսկազմակերպու-*
*թյունների, նրանց ղեկավար մարմինների գործունեության հարցերի վրա: Գոր-*
*ծարար կերպով, կոնստրուկտիվորեն վերլուծվեցին կատարված աշխատանքի*
*արդյունքները, ընդհանրացվեց կուտակված փորձը, բացահայտվեցին առկա*
*թերությունները և չօգտագործված հնարավորությունները, սահմանվեցին ապա-*
*գայի խնդիրները:*

*Ժողովներն ու կոնֆերանսներն անցան լայնորեն ծավալված ներկուսակ-*
*ցական դեմոկրատիայի մթնոլորտում, կոմունիստների փոխադարձ պահանջ-*
*կոտության և խստապահանջության, սկզբունքային քննադատության ու ինք-*
*նաքննադատության մթնոլորտում: Ժողովներում ու կոնֆերանսներում արվե-*
*ցին կուսակցական աշխատանքի բազմազան հարցերին, էկոնոմիկայի ու*
*մշակույթի զարգացման, սովետական մարդկանց աշխատանքի ու կենցաղի*
*պայմանների բարելավման, աշխատավորների կոմունիստական դաստիարա-*
*կության հարցերին վերաբերող երեք միլիոն դիտողություն և առաջարկություն:*

ՍՄԿԿ Կենտկոմը անհրաժեշտ է համարում, որ պրակտիկայի, մեր զարգացման կենսական պրոբլեմների՝ հաշվետվությունների և ընտրությունների ընթացքում կայացած կոլեկտիվ քննարկումն ու իմաստավորումը առավելագույնս օգտագործվեն ներկուսակցական կյանքի հետագա ակտիվացման, մասսաների շրջանում կատարվող կազմակերպչական ու քաղաքական ողջ աշխատանքի ուժեղացման, պարենային ու էներգետիկ ծրագրերի, տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարման համար, ժողովրդի բարեկեցության բարձրացման համար։ Դա առանձնապես կարևոր է հիմա, երբ կուսակցությունը թևակոխում է իր XXVII համագումարի անմիջական նախապատրաստման ժամանակաշրջանը։

Յուրաքանչյուր կուսակցական կոմիտե, յուրաքանչյուր կուսկազմակերպություն պետք է գործնական հետևություններ անի հաշվետու ընտրական կամպանիայի արդյունքներից, դրանք դնի աշխատանքի ընթացիկ ու հեռանկարային պլանների հիմքում, ապահովի ընդունված որոշումների անշեղ կատարումը։ Ինչպես նշում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոն, պետք է առանց կանգ առնելու առաջ ընթանալ։ Ընթանալ՝ հենվելով նախկինում ամբողջ ձեռք բերվածի վրա, ստեղծագործաբար հարստացնելով այն, կոմունիստների, բանվոր դասակարգի, ողջ ժողովրդի կոլեկտիվ միտքը, եռանդը կենտրոնացնելով չլուծված խնդիրների, ներկայի և ապագայի հանգուցային պրոբլեմների վրա։

Այժմ կարևոր է հաստատակամորեն ձգտել ռեալ և ծանրակշիռ արդյունքների։ Հենց ըստ այդ արդյունքների է կուսակցությունը գնահատելու թե՛ ղեկավար կադրերի հասունությունը, թե՛ աշխատավորական կոլեկտիվների աշխատանքը և թե հանրապետությունների, մարզերի, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի նվաճումները։

2. Հաշվետվություններն ու ընտրությունները նկատելիորեն ակտիվացրին կուսակցական կոմիտեների գործունեությունը էկոնոմիկայի ղեկավարման ասպարեզում, հնարավորություն ընձեռեցին ի հայտ բերելու մեծ ռեզերվներ։ Այժմ պետք է կուսակցական կազմակերպությունների, ղեկավար կադրերի, մասնագետների, աշխատավորական կոլեկտիվների ջանքերը կենտրոնացնել այդ ռեզերվների լավագույն օգտագործման վրա, աշխատանքի արտադրողականության բարձրացման, հանրային արտադրության ինտենսիվացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, տնտհաշվարկի արմատավորման նպատակին ուղղված գործնական միջոցառումների իրականացման վրա։ Պետք է առաջնահերթ ուշադրություն նվիրվի նաև կորուստների դեմ վճռական պայքարին, հումքի և վառելիքաէներգետիկ ռեսուրսների տնտեսմանը։

Ելնելով էկոնոմիկայի կառավարման կազմակերպական կառուցվածքը, տնտեսավարման ողջ մեխանիզմը լրջորեն բարելավելու անհրաժեշտությունից, կուսկազմակերպությունների ամենօրյա հսկողության տակ առնել ձեռնարկությունների իրավունքների ընդլայնման և աշխատանքի արդյունքների համար նրանց պատասխանատվության բարձրացման տնտեսափորձի ընթացքը։ Մըշտապես կատարելագործել արտադրական, գիտաարտադրական, ագրոարդյունաբերական միավորումների աշխատանքը։ Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ապահովել աշխատանքի կազմակերպման ու խթանման բրիգադային ձևերի, նախ և առաջ կոմպլեքսային տնտհաշվարկային բրիգադների արմատավորումը, դրանք ամրապնդել կոմունիստներով։

Կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, սովետական ու տնտեսական մարմինները պետք է բարձրացնեն սոցիալիստական մրցության և հանդիպական պլանավորման արդյունավետությունը, ավելի լավ խրախուսեն աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունները, նրանց նորարարությունը։

Ըստ ամենայնի պաշտպանել և զարգացնել մասսաների հայրենասիրական շարժումը, որը նպատակամղված է ընթացիկ տարում աշխատանքի արտա-



դրողականությունը պլանից ավելի մեկ տոկոսով բարձրացնելու և արտադրանքի ինքնարժեքը լրացուցիչ կես տոկոսով իջեցնելու՝ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. դեկտեմբերյան պլենումի առաջադրած խնդրի հաջող կատարմանը։

ՍՄԿԿ Կենտկոմն առաջնահերթ կարևորության խնդիր է համարում 1984 թվականի համար սահմանված առաջադրանքների ո՛չ միայն կատարման, այլև գերակատարման ապահովումը, արդյունաբերության մի շարք ճյուղերում, կապիտալ շինարարության, գյուղատնտեսության բնագավառներում, տրանսպորտում հնգամյակի առաջադրանքների թերակատարումների հաղթահարումը և մինիստրություններից, գերատեսչություններից, տեղական կուսակցական ու սովետական մարմիններից պահանջում է խորապես մտածված և եռանդուն միջոցներ ձեռնարկել այդ ուղղությամբ։

3. Նշելով կուսակցության սոցիալական քաղաքականության իրականացման, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման ասպարեզում ՍՄԿԿ XXVI համագումարից հետո ձեռք բերված շոշափելի արդյունքները, կոմունիստները խստապահանջությամբ վերլուծում էին նախատեսված պլանների կատարման և աշխատավորների նյութական ու հոգևոր հարաճուն պահանջմունքների բավարարման հետ կապված միջոցառումների ուղղությամբ կուսակցական, սովետական, արհմիութենական ու տնտեսական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների պրակտիկ գործունեությունը, քննադատում էին այդ աշխատանքում տեղ գտած թերություններն ու թերացումները։

ՍՄԿԿ Կենտկոմը շեշտում է, որ սովետական մարդկանց աշխատանքի ու կենցաղի պայմանների, բժշկական ու կոմունալ սպասարկման գործի, բնակարանային շինարարության և սոցիալ-կուլտուրական ողջ համալիրի բարելավման, ժողովրդական սպառման բարձրորակ ապրանքների արտադրության ավելացման հարցերը պետք է մշտապես գտնվեն միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության երկրկոմների ու մարզկոմների, միութենական և ինքնավար հանրապետությունների մինիստրների խորհուրդների, երկրգործկոմների ու մարզգործկոմների, տնտեսական մարմինների և ղեկավար կադրերի ուշադրության կենտրոնում։

Ընդսմին հարկավոր է, որ միշտ, անկախ նրանից՝ խոսքը վերաբերում է աշխատավարձին ու պարգևավճարներին, բնակարանների կամ ուղեգրերի բաշխմանը, պարգևատրումներին՝ ամեն ինչում անշեղորեն պահպանվի արդարացիությունը, ամեն ինչ արվի ըստ այն աշխատանքային ավանդի, որ յուրաքանչյուր ոք ներդրել է ընդհանուր գործի մեջ։

4. Հաշվետվություններն ու ընտրությունները նոր ազդակ հանդիսացան աշխատանքային, պետական, կուսակցական կարգապահության բարձրացման համար մղվող պայքարում, հարուցեցին մասսաների ձեռներեցության հետագա զարգացում, բարերար ազդեցություն գործեցին արտադրական գործերի, հասարակական կյանքի վրա, մարդկանց տրամադրության վրա։

Առաջնորդվելով ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան և 1984 թվականի փետրվարյան պլենումների հիմնադրույթներով, կուսակցական կազմակերպությունները պետք է մեծացնեն ջանքերը սոցիալիստական օրինականության, կարգապահության ու կազմակերպվածության ամրապնդման համար, թույլ չտան կամպանիական մոտեցում ցուցաբերել այդ աշխատանքին։ Նրանք պետք է անհաշտ պայքարեն ամեն տեսակ անկազմակերպվածության, անպատասխանատվության դեմ, առավելագույն հոգատարություն ցուցաբերեն ձեռնարկություններում ու կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, հիմնարկություններում ու կազմակերպություններում բարձրարտադրողական աշխատանքի լիարժեք պայմանների ստեղծման նկատմամբ։ Յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում պետք է ըստ ամենայնի հաստատել այնպիսի գիտակցական կարգապահություն, որն իրոք առաջ է մղում արտադրությունը, անհաշտ մթնոլորտ ստեղծել սահմանված կարգի ամեն տեսակ խախտումների նկատմամբ։

5. Ժողովներն ու կոնֆերանսները հանգամանորեն քննարկեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքը։ Նշվում էր, որ կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական գործունեությունը դառնում է ավելի նպատակասլաց ու հարձակողական, ավելի ակտիվորեն է խարսխվում կուսակցության սոցիալ-տնտեսական քաղաքականության վրա, ավելի լավ է ծառայում այդ քաղաքականության իրականացմանը։ Դրա հետ միասին շատ կոմունիստներ խոսում էին այն մասին, որ Կենտկոմի պլենումում նշված էական թերությունները դանդաղ են վերացվում։

Կուսակցական կազմակերպությունների պարտքն է գաղափարախոսական աշխատանքը կառուցել տեսական խոր հիմքի վրա, սերտորեն շաղկապել արտադրական ու դաստիարակչական կոնկրետ խնդիրների լուծման հետ, բարձրացնել ղեկավար կադրերի, բոլոր կոմունիստների պատասխանատվությունն աշխատավորական կոլեկտիվների քաղաքական ու բարոյական վիճակի համար։ Կենտրոնական կոմիտեն կոմունիստների, կուսակցության, պատերազմի ու աշխատանքի վետերանների հետ լիովին համամիտ է, որ պետք է առանձնահատուկ ուշադրություն նվիրել մատաղ սերնդի դաստիարակությանը, երիտասարդության մեջ դասակարգային ինքնագիտակցության, բարձր կազմակերպվածության, կոլեկտիվիզմի, ինտերնացիոնալիստական հատկանիշների, կոմունիզմի իդեալների համար մղվող պայքարում անձնվիրության զարգացմանը։ Անհրաժեշտ է բոլոր միջոցներով արմատախիլ անել պորտաբուծությունը, կաշառակերությունը, սպեկուլյացիան, հափշտակումները, հարբեցողությունը, այն ամենը, ինչ խորթ է մեր աշխարհհայացքին ու ապրելակերպին, մեր բարոյականությանը։

6. Ժողովների ու կոնֆերանսների մասնակիցները մեծ շահագրգռությամբ էին քննարկում կուսակցական աշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործման հարցերը։ Նշվում էր, որ կուսակցական կոմիտեների գործունեության ոլորտում վերջին ժամանակներս դրսևորվում են ավելի շատ գործարարություն, կազմակերպվածություն, պլանաչափություն։ Նրանց ջանքերն առավել մեծ չափով են կենտրոնացվում անմիջականորեն կուսակցական կազմակերպություններում և աշխատավորական կոլեկտիվներում մարդկանց հետ կատարվող կենդանի աշխատանքի վրա։

Միևնույն ժամանակ ամենայն որոշակիությամբ նշվում է, որ շատ կազմակերպությունների աշխատանքի ոճում արմատական բարելավում առայժմ չի կատարվել։ Կուսակցական կոմիտեները, գործելով իներցիայով, երբեմն չարաշահում են բազմաթիվ որոշումների ընդունումը, չարդարացված կերպով մեծ թվով խորհրդակցությունների ու նիստերի անցկացումը, վատ են իրականացնում որոշումների փաստական կատարման վերահսկողությունը, հաճախ կրկնօրինակում և փոխարինում են սովետական ու տնտեսական մարմիններին։

Այս թերությունների վերացումը մի այնպիսի գործ է, որի հետաձգումն անհանդուրժելի է։ Կուսակցական կազմակերպությունները, ղեկավար կադրերը պետք է անդուլ կերպով հետևեն լենինյան ոճին, խորապես ըմբռնեն, որ այդ ոճին տիրապետելը հետագա առաջընթացի ապահովման, մասսաների հետ կուսակցության կապերի ամրապնդման պարտադիր պայմանն է։ Պետք է ապահովել կուսակցական կոմիտեների և պետական մարմինների ֆունկցիաների հստակ սահմանազատում։

Վճռականորեն վերջ տալ այն հարցերը կուսակցական կոմիտեների վրա գցելու պրակտիկային, որ պետք է լուծեն սովետական ու տնտեսական մարմինները։ Նման պրակտիկան սառնություն է հարուցում կադրերի շրջանում, հղի է կուսակցական կոմիտեների՝ որպես քաղաքական ղեկավար մարմինների դերի թուլացման վտանգով։ Պետք է անշեղորեն ելնել ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թվականի փետրվարյան պլենումի այն ցուցումներից, որ տնտեսությամբ ըզ-



բաղվելը կուսակցական կոմիտեների համար նշանակում է նախ և առաջ զբաղվել տնտեսությունը վարող մարդկանցով։

Կուսակցական կոմիտեները պետք է հմտորեն ուղղություն տան, կոորդինացնեն նրանց աշխատանքը, բարձրացնեն պետական ու հասարակական կազմակերպությունների քաղաքական ղեկավարման արդյունավետությունը։

Անհրաժեշտ է այսուհետ ևս կատարելագործել կուսակցական կոմիտեների պլենումների, բյուրոների, քարտուղարությունների աշխատանքը, կոմունիստների ժողովների անցկացման պրակտիկան, ընդմիշտ թույլ չտալով ավելորդ կազմակերպամոլություն։ Հետևողականորեն պահպանել կոլեկտիվության սկզբունքը, այն զուգորդելով իրենց պարտականությունների կատարման համար աշխատողների անձնական պատասխանատվության հետ։ Վճռականորեն արմատախիլ անել դատարկ նիստարարությունն ու թղթարարությունը։ Ընտրովի ակտիվի, ղեկավար կադրերի, կուսակցական ապարատի ուժերը կենտրոնացնել տեղերում տիրող վիճակի ուսումնասիրման և գործերի կազմակերպման վրա։ Կատարելագործել կատարման վերահսկողության ու ստուգման մեթոդները։ Ժողովրդի հետ կուսակցության կապերի ամրապնդման, կուսակցական կոմիտեների գործունեության բարելավման նպատակով ավելի մեծ չափով օգտագործել աշխատավորների նամակներն ու դիմումները։

7. Կազմակերպական-կուսակցական աշխատանքի պրոբլեմների՝ ժողովների և կոնֆերանսների ընթացքում տեղի ունեցած քննարկումը պարզորոշ ցույց տվեց, որ ՍՄԿԿ XXVI համագումարի գաղափարների ու որոշումների ազդեցության ներքո տեղի է ունենում կուսակցության հետագա կազմակերպական ամրապնդման, կուսակցական շարքերի աճի օգտավետ պրոցես, կատարելագործվում են ներկուսակցական հարաբերությունները։ Զեկուցումներում և ելույթներում դրա հետ միասին բացահայտվեցին այդ հարցերում տեղ գտած թերություններն ու վրիպումները։

ՍՄԿԿ Կենտկոմը անհրաժեշտ է համարում չթուլացնել կուսակցության շարքերի որակական կազմի բարելավման ջանքերը։ Թույլ չտալ նոր անդամների ընդունելության արագացման փաստեր, ապահովել իրոք առաջավոր մարդկանց և ամենից առաջ բանվոր դասակարգի ներկայացուցիչների խիստ ընտրությունը ՍՄԿԿ-ի շարքերն ընդունելու համար։ Մշտապես հոգալ երիտասարդ կոմունիստներին բարձր գաղափարայնության ոգով, ՍՄԿԿ կանոնադրությունը, կուսակցական կյանքի նորմերն ու ավանդույթները խստագույնս պահպանելու ոգով դաստիարակելու մասին։ Այդ նպատակով ակտիվորեն օգտագործել երիտասարդ կոմունիստների դպրոցները, կուսակցական հանձնարարությունները, անհատական զրույցները և կուսակցության համալրման աշխատանքի՝ իրենց արդարացրած մյուս ձևերը։

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, կուսակցության երկրկոմները, մարզկոմները, օկրուգկոմները, քաղկոմներն ու շրջկոմները, հենվելով ժողովներում ու կոնֆերանսներում կոմունիստների արտահայտած կոլեկտիվ կարծիքի վրա, պետք է անհրաժեշտ միջոցներ ձեռնարկեն սկզբնական կուսակցական կազմակերպությունների, արտադրամասային կուսկազմակերպությունների ու կուսակցական խմբերի մարտունակության հետագա բարձրացման, աշխատավորական կոլեկտիվների կյանքում, կուսակցության քաղաքականության իրականացման գործում նրանց դերի ուժեղացման համար։ Բարձրացնել այն կուսակցական կազմակերպությունների ղեկավարման մակարդակը, որոնց դեռևս պակասում են ձեռներեցությունն ու սկզբունքայնությունը։ Հաստատակամորեն ձգտել, որ նրանք գործեն ավելի ակտիվ, անհաշտ դիրք գրավեն նրանց նկատմամբ, ովքեր խախտում են կուսակցական ու պետական կարգապահությունը, հանդես են բերում տեղայնություն, գերատեսչայնություն, թույլ են տալիս բյուրոկրատիզմ ու լճացածություն, չարաշահում են պաշտոնեական դիրքը։ Հատուկ ուշադրություն նվիրել ադմինիստրացիայի գործունեության և ապարատի աշխատանքի վերահսկման կուսակցական կազմակերպությունների իրավունքի լայն օգտագործմանը։

Դրականորեն գնահատելով վերադաս կուսակցական մարմինների ներկայացուցիչների, տնտեսական ղեկավարների գործարար մասնակցությունը հաշվետու ընտրական կամպանիայի բոլոր մակարդակներում և, հատկապես, սկզբնական կազմակերպություններում, անհրաժեշտ համարել այդ փորձի ամրապնդումը և կուսակցական կոմիտեների քարտուղարներին, բյուրոների անդամներին, կուսկոմիտեների մյուս աշխատողներին, մինիստրներին ու գերատեսչությունների ղեկավարներին խորհուրդ տալ սիստեմատիկաբար մասնակցել կուսակցության ստորին օղակների, աշխատավորական կոլեկտիվների ժողովներին և մյուս միջոցառումներին։

8. Հաշվետվությունների և ընտրությունների ընթացքում համակողմանի քննարկվում էին կադրային քաղաքականության իրականացման հարցերը։ Կոմունիստները միահամուռ հավանություն տվեցին կուսակցական, պետական, տնտեսական ու հասարակական աշխատանքի տարբեր տեղամասերը բարոյական վեհ հատկանիշներով օժտված, քաղաքականապես հասուն, որակյալ, եռանդուն ղեկավարներով ամրապնդելու՝ կուսակցության կողմից ձեռնարկվող միջոցառումներին։ Ժողովներում և կոնֆերանսներում վերլուծության էր ենթարկվում կադրերի ընտրության, տեղաբաշխման, գաղափարական կոփման ու դաստիարակման ասպարեզում կուսակցական կոմիտեների աշխատանքը, քննադատվում էին առանձին ղեկավարներ։

Հաշվետու ընտրական կամպանիայի կարևոր արդյունքը հանդիսացան ընտրովի ղեկավար մարմինների կազմի զգալի նորացումը, այդ մարմինների համալրումը թարմ ուժերով։ Կուսակցական կոմիտեներում, բյուրոներում այժմ ավելի շատ են բանվորները, կանայք, ավելի լրիվ է ներկայացված կուսկազմակերպությունների ազգային կազմը։ Կուսակցության շրջկոմների, քաղկոմների քարտուղարներ ընտրված կանանց թիվն աճել է մեկ հինգերորդով, իսկ կուսակցության մարզկոմների քարտուղարներ ընտրված կանանց թիվը՝ երկու անգամ։ Պատասխանատու պոստերում ընտրվել են այնպիսի կոմունիստներ, որոնք ընդունակ են համոզել մարդկանց և կարողանում են գործնականում իրականացնել կուսակցության քաղաքականությունը։

Կուսակցական կոմիտեի կազմում ընտրվելը, նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թվականի փետրվարյան պլենումում, պետք է համարել վստահության յուրօրինակ վարկ, որ կուսակցության անդամներին տվել են իրենց ընկերները։ Եվ այդ վստահությունը պետք է արդարացվի աշխատանքում անձնական օրինակով։ Այսպիսին է տեղի ունեցած ժողովների ու կոնֆերանսների մասնակիցների պատվիրանը։

Այս կապակցությամբ կուսակցական մարմինները կոչված են ապահովելու բարձր պահանջկոտություն և միևնույն ժամանակ՝ բարյացակամ վերաբերմունք կադրերի նկատմամբ, ընտրովի նոր ակտիվի հետ կազմակերպելու քաղաքական գործունեության ձևերին ու մեթոդներին տիրապետելու աշխատանքը, դրա ուսուցումը, իրազեկ դարձնելը։ Դասընթացներում, սեմինարներում, կուսակցական ուսումնական հաստատություններում պետք է ավելի խոր ուսումնասիրվեն էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման հրատապ հարցերը, կազմակերպական-կուսակցական և գաղափարախոսական աշխատանքի տեսությունն ու պրակտիկան։ Ղեկավար կադրերին ընտրելիս ու տեղաբաշխելիս հաշվի առնել նրանց կուսակցական-քաղաքական կրթություն ունենալը։

Այն առնչությամբ, որ հաշվետու ընտրական կամպանիան որոշ կուսակցական կազմակերպություններում ի հայտ բերեց պատասխանատու պոստերում առաջ քաշելու համար պատրաստված, գործով ստուգված աշխատողների պակաս, կուսակցական կոմիտեներին պարտավորեցնել արմատապես բարելավելու կադրերի ռեզերվի հետ տարվող աշխատանքը, հատուկ ուշադրություն նվիրելով երիտասարդ, հեռանկարային աշխատողների ընտրությանն ու դաստիարակությանը գիտության տարբեր ճյուղերի մասնագետներից, կանանցից, կուսկազմակերպությունների կազմում եղած բոլոր ազգությունների ներկայացուցիչներից։



Առաջ քաշելիս անհրաժեշտ է աշխատողների մեջ ամենից առաջ տեսնել նրանց նվիրվածությունը կուսակցության գաղափարներին, խոր գործիմացությունը, կազմակերպչական ընդունակությունները, բարձր կուլտուրան, մասշտաբայնորեն մտածելու, նորն զգալու և պրակտիկայում այն ընկալելու կարողությունը։

9. Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին ու շրջկոմներին հանձնարարել ապահովել ժողովներում և կոնֆերանսներում արված առաջարկությունների ու դիտողությունների ուշադիր քննարկումը, դրանց առթիվ ձեռնարկել համապատասխան միջոցներ, այդ մասին ժամանակին իրազեկ դարձնել կոմունիստներին։ Ոչ մի կոնստրուկտիվ ելույթ չպետք է անուշադրության մատնվի, ոչ մի գործարար միտք չպետք է զուր կորչի։

10. ՍՄԿԿ Կենտկոմը նշում է հաշվետվությունների ու ընտրությունների լայն լուսաբանումն ապահովելու նպատակով կենտրոնական ու տեղական թերթերի ու ամսագրերի, հեռուստատեսության ու ռադիոյի խմբագրությունների կատարած մեծ աշխատանքը, որը էապես նպաստեց կուսակցական ժողովների ու կոնֆերանսների կազմակերպված և գործարար անցկացմանը։

Մամուլի, հեռուստատեսության ու ռադիոյի աշխատողները պետք է այսուհետ ևս, օգտագործելով հաշվետու ընտրական կամպանիայի ընթացքում կուտակված փորձը, համոզիչ կերպով ցույց տան, թե պրակտիկայում ինչպես են մարմնավորվում կոմունիստների կողմից կոլեկտիվորեն մշակված միջոցառումները, թե ինչպես է ընթանում քննադատական դիտողությունների և առաջարկությունների իրագործման աշխատանքը։ Այս թեման պետք է կարևոր տեղ գրավի կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումների կենսագործման ասպարեզում կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների բազմազան գործունեության լուսաբանման մեջ։

---

# Կ. ՄԱՐՔՍԻ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԸ ԵՎ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ԱՐԴԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**Վ. ԹՈՐՈՍՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ

*ՆԵՐԿԱՅՈՒՄՍ, ԵՐԲ ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ վերածվելով անմիջական արտադրաուժի, հետզհետե աճող նշանակություն է ձեռք բերում հասարակության կյանքում և արմատապես փոխում է ինչպես արտադրության բնույթը, այնպես էլ, առանց չափազանցության՝ անգամ մեր մոլորակի բուն պատկերը, առավել հրատապ է դառնում գիտության իսկ վերլուծությունն իբրև փիլիսոփայական հետազոտության առարկա, որը ներառնում է ճանաչողության պրոցեսի, գիտության զարգացման շարժիչ ուժերի և օրինաչափությունների ուսումնասիրությունը։ Նման հետազոտությունները, որոնք ինքնին հետաքրքիր են, կարող են նշանակալից չափով օգնել նաև գիտության զարգացման կանխատեսմանն ու պլանավորմանը (հատկապես հաշվի առնելով սոցիալիզմի առավելությունները), բնական և այլ գիտությունների մեթոդաբանության գիտական մշակմանը։ Նշված պրոբլեմատիկան ըսկզբունքորեն կարևոր է նաև ժամանակակից գաղափարախոսական պայքարում։*

*Գիտության զարգացման, նրա միտումների ու պայմանավորող գործոնների փիլիսոփայական վերլուծության հրատապությունը հատկապես շեշտվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, որտեղ այդպիսի վերլուծությունը դասվել է դիալեկտիկամատերիալիստական փիլիսոփայության առջև այժմ ծառացած կարևորագույն խնդիրների շարքին։ Գիտության զարգացումը վերլուծելու անհրաժեշտությունը բխում է նաև այն խնդիրներից, որոնք առաջադրել է ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումը։*

*Գիտության զարգացման առանձնահատկությունների փիլիսոփայական իմաստավորման փորձերն սկիզբ են առնում դեռևս հնադարյան մտածողությունից, բայց գիտության փիլիսոփայությունն իբրև այդպիսին ձևավորվել է XIX—XX դդ. սահմանագլխին՝ ամենից առաջ այն հեղափոխության կապակցությամբ, որ կատարվեց ֆիզիկայում և առաջ բերեց ճանաչողության մետաֆիզիկամատերիալիստական իդեալների լիակատար փլուզում։ Նոր իմացաբանական իրավիճակի իմաստավորման առաջին քայլը եղավ բացարձակ, վերջնական գիտելիքի իդեալից հրաժարվելը, որին, ինչպես թվում էր, գիտությունը մոտենում էր անշեղորեն, ուղիղ գծով։ Ավելի կենսունակ դուրս եկավ «զուտ» գիտական գիտելիքի իդեալը, որն ազատ է ամեն մի «արտաքին» ազդեցությունից (այդ թվում ճանաչողության սուբյեկտի ամեն տեսակի ազդեցությունից), երբ գտնում էին, թե գիտության զարգացումն ամբողջապես որոշվում է նրա «ներքին տրամաբանությամբ»։*

*Ճանաչողության մետաֆիզիկական իդեալների կործանման պայմաններում «իսկական» փիլիսոփայության դերն իր վրա վերցնել փորձեց նեոպոզիտիվիզմը։ Ինչպես և Կոնտի ու Սպենսերի «առաջին պոզիտիվիզմը» և էմպիրիոկրիտիցիզմը, նեոպոզիտիվիզմի փիլիսոփայությունն իրեն խնդիր է դրել «զուտ», «մետաֆիզիկական աղավաղումներով» չմթագնված գիտության որոնումը և, որպես այդ որոնման կարևոր բաղադրիչ, գիտության «զուտ», «իսկական գիտական հիմքերի վրա» մաթեմատիկական ճշտությամբ մեկընդմիշտ մշակված «զուտ» «գիտության փիլիսոփայության» ստեղծումը։ Վ. Ի. Լենինի կողմից մախիզմի և էմպիրիոկրիտիցիզմի ջախջախիչ քննադատության հետևանքով, առաջին հերթին նեոպոզիտիվիզմն իր արտաքին գիտական պատկառելիությամբ, մի շարք կարևորագույն պրոբլեմների խիստ տրամաբանական մշակվածությամբ իր վրա սևեռեց արևմտյան շատ փիլիսոփաների ու բնախույզների ուշադրությունը (որոնք գիտության զարգացման հետևանքով կանգնել էին փիլիսոփայական բարդ խնդիրների առջև)։ Սակայն շատ շուտով պարզվեց, որ գիտության նեոպոզիտիվիստական վերլուծության ելակետային դրույթներն արդեն այն սահմանափակում են զուտ տրամաբանական հարաբերությունների հետազոտությամբ, այն էլ սոսկ պատրաստի գիտելիքի ոլորտում, քանի որ այդ դրույթները բացառում են գիտելիքի ծագման ու զարգացման պրոցեսների հետազոտությունը։*

*Նեոպոզիտիվիզմի փիլիսոփայությունը սկզբից ևեթ ենթարկվեց մի ամբողջ շարք մարքսիստ փիլիսոփաների դիալեկտիկամատերիալիստական հանգամանալից քննադատությանը։ Արևմտյան գիտության փիլիսոփայությունը շատ ավելի ուշ կարողացավ ձերբազատվել նեոպոզիտիվիզմից, վերջապես գիտակցելով, որ այն ձևական տրամաբանական ոլորտում իր ունեցած բոլոր նվաճումներով հանդերձ, սկզբից ևեթ անկարող է ծառայել որպես գիտության փիլիսոփայություն։ Ակնհայտ դարձավ, որ գիտության ադեկվատ փիլիսոփայություն մշակելու համար անհրաժեշտ է դիմել դրա զարգացման բուն ընթացքին, հատուկ ուշադրություն դարձնելով գիտության պատմությանն ու գնահատելով այն ոչ թե իբրև փաստերի արխիվ, այլ փիլիսոփայական վերլուծության նյութ։ Գիտության զարգացման իրական ընթացքին դիմելը միայն կարող է թույլ տալ խուսափելու այն իբրև «իր սիրած գաղափարների իրականացման պատմություն» դիտելուց։ Ու թեև այսպիսի մոտեցումը վաղուց և համոզիչ կերպով հիմնավորել էր Կ. Մարքսը, արևմտյան «գիտության փիլիսոփայության» համար այն կատարյալ հայտնություն եղավ։ Զգալի չափով նաև որպես նեոպոզիտիվիզմի ճգնաժամի նկատմամբ ռեակցիա է բացատրվում «գիտության փիլիսոփայության» մեջ այն եռուզեռը, որը 60-ական թթ. սկսվեց ԱՄՆ-ում և Անգլիայում, որտեղ նեոպոզիտիվիզմի ազդեցությունը, չնայած նրա անդադար քննադատությանը, հատկապես ուժեղ էր։ Այդ եռուզերի անսպասելիությունն ու չափերը առիթ տվեցին անգամ պնդելու արդի գիտության փիլիսոփայության մի ամբողջ շարք նվաճումներում անգլիական ու ամերիկյան հետազոտողների առաջնությունը։*

*Առանձնակի համբավ ձեռք բերեց ամերիկյան ֆիզիկոս և գիտության պատմաբան Թոմաս Կունը, որի 1962 թվականին սկզբնական տարբերակով լույս տեսած գլխավոր աշխատությունը* (Структура научных революций. М., 1975, 1977) *բացառիկ արձագանք գտավ ինչպես գիտության փիլիսոփայության մեջ, այնպես էլ բնական գիտությունների բնագավառում աշխատող գիտնականների շրջանում։ Այդ աշխատությունում շարադրված գաղափարները և դրանց քննադատական վերլուծությունը ինչպես արևմտյան գիտության փիլիսոփայության, նույնպես և մատերիալիստական դիալեկտիկայի դիրքերից զգալիորեն խթանեցին գիտական ճանաչողության զարգացման օրինաչափությունների խիստ արժեքավոր հետազոտությունները։*

*Թ. Կունի գաղափարների կենտրոնական դրույթներից մեկն այն է, որ գիտության պատմության մանրակրկիտ վերլուծության հիման վրա նա կտրականապես մերժում է գիտության զարգացման նկատմամբ կուտակումային (կումուլյատիվային) հայացքը, ապացուցելով, որ «գիտության զարգացումն ընթանում է ոչ թե հին գիտելիքների վրա նորերի խաղաղ ավելացումով, այլ առաջատար պատկերացումների պարբերաբար արմատական փոխակերպումով, այսինքն՝ պարբերաբար տեղի ունեցող գիտական հեղափոխություններով»*

տեսակետից կարելի է պատկերացնել հետևյալ կերպ. օբյեկտիվ ճշմարտությունները, որոնք որոնում է գիտությունը, կախում չունեն գիտական ընկերակցության դատողություններից, բայց օբյեկտիվության, ռացիոնալության հասկացությունները, գիտական որոնման, հատկապես կոնկրետ, մերձավորագույն նպատակների մասին պատկերացումները, պատճառականորեն պայմանավորված լինելով ինչպես գիտության ներքին տրամաբանությամբ, այնպես էլ իր իսկ գիտության, հասարակության մեջ նրա ստատուսի, գիտական նկարագրության ու բացատրության մասին պատկերացումների զարգացմամբ, պատմականորեն փոփոխվող են։ Այդ պատկերացումների փոփոխությունները որոշվում են ոչ միայն ներգիտական, այլև մշակութային-պատմական, տնտեսական և նույնիսկ քաղաքական գործոնների չափազանց լայն կոմպլեքսով։

Զարգացնելով այս տեսակետը, Ս. Թուլմինը հանգում է իր մյուս կենտրոնական գաղափարին, որի շարադրման մեջ նա շարունակում է գիտության պատմության նկատմամբ «բնապատմական», տարերային-մատերիալիստական մոտեցումը։ Ըստ Ս. Թուլմինի, գիտության, այսինքն՝ գիտական գաղափարների, տեսությունների, ինչպես և գիտության ու գիտական գործունեության նորմերի և իդեալների զարգացումը կատարվում է դարվինյան ընտրության օրենքներին համանման օրենքներով։ Ըստ որում շատ կարևոր է հաշվի առնել, որ պարզունակություն կլիներ գիտական գաղափարները միանշանակ կերպով բաժանել հաղթանակածների, որոնք շնորհիվ իրենց ճշմարտության անցել են ընտրանքից, և պարտվածների՝ որպես իրականությանը չհամապատասխանողների։ Հայտնի է, հատկապես այդ հարցի լենինյան մշակումից հետո, որ գիտական ցանկացած պատկերացումներում միահյուսված են թե՛ ճշմարտության և թե մոլորության տարրերը։ Հայտնի է նաև, որ ոչ միշտ են իսկույն առավելություն ստանում իրականությանն ավելի ադեկվատ կոնցեպցիաները, որ հաճախ գիտության մեջ երկար ժամանակ իշխում են նաև ոչ ճիշտ պատկերացումները (երկրակենտրոն համակարգը, աշխարհի երաժշտական «ներդաշնակությունը», ալքիմիական «համակրանքները», ջերմածինը, ֆլոգիստոնը, եթերը և այլն)։ «Դարվինյան ընտրության» տեսակետից գիտության մեջ դա հնարավոր է այն դեպքում, երբ այդպիսի գաղափարները, այսպես թե այնպես ներդաշնակելով փորձին, ավելի են համապատասխանում տվյալ դարաշրջանի մտածողության ոճին, որը բնորոշվում է դարաշրջանի լայն «սոցիալ-կուլտուրական դաշտով»՝ ներառելով և՛ գիտական արդյունքները, և՛ դրանց համադրման հանրագումարները, լինի դա միջնադարյան սխոլաստիկան կամ թե քվանտային մեխանիկայի ստեղծումը։Այսպիսով, գիտության մեջ «ընտրությունը» կատարվում է նույնքան տարերայնորեն, բայց և նույնքան օրինաչափորեն, ինչպես և կենդանի բնության մեջ։

Համապատասխանաբար, գիտության մեջ սկզբունքորեն նոր գաղափարներ են հայտնվում միայն այն ժամանակ, երբ այդ բանի հնարավորությունն է ստեղծում գիտության «ներքին տրամաբանության» և «արտաքին», սոցիալ-կուլտուրական ֆոնի փոխգործունեությունը։ Գիտության զարգացման նկատմամբ այսպիսի հայացքի կապակցությամբ գիտության «բնապատմական» զարգացման և հասարակության բնապատմական զարգացման միջև անալոգիան դադարում է պարզապես այդպիսին լինելուց։ Հիշենք Կ. Մարքսին. «Ոչ մի հասարակական ֆորմացիա չի ոչնչանում, մինչև որ չեն զարգանում բոլոր արտադրաուժերը, որոնց համար այդ ֆորմացիան բավական լայն ասպարեզ է տալիս, և նոր, ավելի բարձր արտադրահարաբերությունները երբեք հանդես չեն գալիս, մինչև որ հին հասարակության ծոցում իսկ չեն հասունանում դրանց գոյության նյութական պայմանները» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս։ Ընտիր երկեր երեք հատորով։ Հ. 1։ «Հայաստան» հրատ., 1972, էջ 690)։ Ճիշտ այդպես էլ ոչ մի հարաբերություն գիտական ընկերակցության ներսում (և գիտական ընկերակցությունների միջև), գիտական արտադրության և գիտության արտադրաուժերի գործողության արդյունք հանդիսացող և ոչ մի գիտական գաղափար ավելի շուտ երևան չեն գալիս, քան գիտության ներքին տրամաբանության մեջ, ինչպես նաև տվյալ դարաշրջանի կուլտուրայի և տնտեսության մեջ դրա համար անհրաժեշտ պայմանների հասունանալը։



Դա լիովին արդարացի է ոչ միայն գիտական գաղափարների համար, այլև գիտության ստատուսի ու հնարավորությունների վերաբերյալ պատկերացումների, դրա նպատակների և խնդիրների, որոնք ընդունվել են գիտական ընկերակցության կողմից և զգալապես կանխորոշում են գիտության զարգացումը։ Շարունակելով այդ միտքը՝ Կ. Մարքսը գրում է. «Այդ պատճառով էլ մարդկությունը միշտ իրեն առաջադրում է լոկ այնպիսի խնդիրներ, որոնք ինքը կարող է լուծել, որովհետև մոտիկից քննելիս միշտ պարզվում է, որ խնդիրն իսկ ծագում է միայն այն ժամանակ, երբ նրա լուծման նյութական պայմաններն արդեն առկա են կամ գոնե գտնվում են լինելիության պրոցեսում» (նույն տեղը)։ Դա լիովին արդարացի է գիտության զարգացման համար, և այն «նյութական պայմանները», որոնք որոշում են գիտական ընկերակցության առաջադրած նպատակներն ու խնդիրները, բխում են սոցիալ-տնտեսական և կուլտուր-պատմական գործոնների սերտաճումից։ Հասարակության բնապատմական զարգացման և գիտության առաջընթացի միջև անալոգիան հատկապես իմաստալից է դառնում այն բանով, որ թե՛ հասարակության և թե գիտության զարգացումը կատարվում է մարդկանց միջոցով, բայց օբյեկտիվ, նրանցից կախում չունեցող օրենքներով։

Եվ այսպես, արևմտյան գիտության փիլիսոփայության երկու առաջատար կոնցեպցիաների, ինչպես նաև դրանց քննադատական յուրացումից բխող հետևությունների սեղմ շարադրանքը հնարավորություն է ընձեռում ուշադրություն դարձնելու այդ կոնցեպցիաների մի շարք հիմնական դրույթների տարերային-մատերիալիստական բնույթի վրա՝ մի բան, որը չի զարմացնի, եթե հիշենք Վ. Ի. Լենինի հետևությունները ճանաչողության զարգացման անխուսափելի «միակ ճշմարիտ» ուղու մասին։ Մեր կարծիքով, ավելի ևս հետաքրքրական է այն հանգամանքը, որ այդ կոնցեպցիաների մեջ կարելի է ի հայտ բերել տարբեր երկրներում ժամանակակից գիտության փիլիսոփայությունը ամենաբազմազան ձևերով սնող մարքսիստական ակունքները, անկախ այդ երկրների հասարակական-քաղաքական կառուցվածքից։

Այդ ազդեցությունը հասկանալու և գնահատելու համար կրկին վերադառնանք Կ. Մարքսի որոշ ծրագրային մտքերին, որոնք, ուղղակի թե անուղղակի, վերաբերում են գիտության զարգացմանը։ Ինչպես հայտնի է, Կ. Մարքսի աշխատություններում առաջին անգամ տեսականորեն հիմնավորվել է գիտության և արտադրության միջև անհրաժեշտ կապը, որը հաջողվել է ի հայտ բերել ոչ միայն Կ. Մարքսի ժամանակակից կապիտալիստորեն բարձր զարգացած արդյունաբերություն ու գիտություն ունեցող հասարակության մեջ, այլև նույնիսկ անտիկ աշխարհում։ Հասարակության և հասարակական գիտակցության տարբեր ձևերի զարգացման իր վերլուծության մեջ Կ. Մարքսն այդ ամենը հասկանալու բանալի է դարձնում «հասարակության տնտեսական կառուցվածքը կազմող հարաբերությունները», որոնք որոշիչ են թե՛ արտադրության և թե գիտության զարգացման համար։ Դրանով հանդերձ Կ. Մարքսը սոցիալական գործոնների ազդեցությունը չի սահմանափակել զուտ տնտեսական գործոններով։ Գիտության մարքսիստական վերլուծության հիմնական հետևանքը այն ամենալայն իմաստով իբրև սոցիալական արդյունք դիտելն է, երբ շեշտվում է, թե գիտության նշանակությունը, նրա օգտագործման ու զարգացման ուղղությունները կարող են հասկացվել առավել լայն սոցիալական կոնտեքստի հետ նրա փոխազդեցության մեջ։

Միանգամայն նոր ու բացառիկ արժեքավոր էր Կ. Մարքսի հետևությունն այն մասին, որ գիտելիքը, մի կողմից, պայմանավորված լինելով զանազան սոցիալական խմբերի տնտեսական և այլ պահանջմունքներով, նրանց շահերով, միևնույն ժամանակ սահմանափակված է արտադրության այս կամ այն եղանակին բնորոշ զանազան գաղափարական նախադրյալներով։ Այսպես, շատ հետաքրքրական է հետազոտող իրողությունը սուբյեկտից միանգամայն մեկուսացած դիտելու մետաֆիզիկական-մատերիալիստական իմացաբանությանը բնորոշ օբյեկտիվիստական դիրքորոշման սոցիալ-կուլտուրական արմատների բացահայտումը Կ. Մարքսի կողմից։ XVIII—XIX դարերին բնորոշ այդ մոտեցումը Կ. Մարքսը բացատրում է որպես կապիտալիստական ֆորմացիայի հա-

Կուզնեցովը, ինչպես նաև սովետական փիլիսոփայության հաջորդ սերնդի ներկայացուցիչներ Վ. Ս. Ստյոպինը, Վ. Ս. Շվիրյովը, Լ. Ա. Միկեշինան, Վ. Ն. Սադովսկին, Վ. Ա. Լեկտորսկին և շատ ուրիշներ։

Գիտության հետազոտման մարքսիստական սկզբունքները զարգացնող այդ ուսումնասիրություններում հաշվի են առնված արևմտյան առավել խորաղնին կոնցեպցիաների դիալեկտիկամատերիալիստական վերլուծության արդյունքները, հաղթահարված են դրանց բնորոշ իռացիոնալիզմը, կոնվենցիոնալիզմը, սուբյեկտիվիզմը։ Այլ կերպ է դրվում գիտական հեղափոխությունների մասին հարցը։ Գիտության զարգացման «հեղափոխական» և «նորմալ» շրջանների Թ. Կունի բաժանման փոխարեն այդպիսի կտրուկ սահման չի դրվում, շատ ավելի շեշտվում է ժառանգականության, գիտական գիտելիքի զարգացման մեջ դիալեկտիկական բացասման մոմենտը։ Նշանակալից չափով ավելի ճկուն և է՛լ ավելի հետևողական դիրքերից է քննարկվում ինչպես տնտեսական, այնպես էլ ընդհանուր մշակութային գործոնների ազդեցությունը, նշվում է դրանց դիալեկտիկական փոխկապվածությունն ու փոխպայմանավորվածությունը գիտական գիտելիքի էվոլյուցիայի վրա ազդելու գործում։

Սոցիալ-մշակութային մոտեցման դիրքերից հատկապես յուրօրինակ ու խոր հետազոտություններ են կատարվել այսպես կոչված՝ նախադրյալային գիտելիքի վերլուծության մեջ։ Այդպիսի նախադրյալային գիտելիքի դեր են կատարում մտածողության ոճը և աշխարհի գիտական պատկերը, որոնք խորապես հետազոտվել են Վ. Ս. Ստյոպինի, Պ. Ս. Դիշլևևի, Լ. Ա. Միկեշինայի և սովետական այլ գիտնականների աշխատություններում։

Մեզ մոտ բացառիկ արժեքավոր հետազոտություններ են կատարվում արդի գիտության համապարփակ պրոբլեմների բնագավառում, որը միևնույն ժամանակ և՛ որպես գիտելիք է դիտվում, և՛ որպես գործունեություն, հետազոտվում են հասարակական, բնական և տեխնիկական գիտությունների ինտեգրացիայի օրինաչափությունները, գիտության էկոլոգիական պրոբլեմները, որոնց ուսումնասիրությունը այդպիսի ինտեգրացման «բնապատմականորեն» գոյացած կարևորագույն ուղիներից մեկն է։

Այսպիսով, մի այնպիսի բնագավառում, ինչպիսին է գիտության փիլիսոփայությունը, Կ. Մարքսի գաղափարները, որոնք շատ առաջ են անցել իրենց ժամանակից, առավել խոր ակունք, մեթոդաբանական կողմնորոշիչ են ծառայում, օգնելով ստեղծել գիտության և նրա զարգացման առանձնահատկությունների մասին առավել ադեկվատ պատկերացումներ, որոնց իմացությունը հետզհետե ավելի է օգնում հասարակությանը՝ լինել բնության տերը, իր ձեռքում պահել իր սեփական զարգացման թելերը՝ «ճանաչված անհրաժեշտության» հիման վրա։

---

# ԱՐԴԻ ՍՈՑԻԱԼ-ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ՍՆԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

XX ԴԱՐԻ ՍՈՑԻԱԼ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՊՐԱԿՏԻԿԱՆ հավաստում է, որ իրականության ճանաչման ու վերափոխման միակ գիտական մեթոդը մարքսիզմ-լենինիզմն է, որն ի վիճակի է ճիշտ պատասխաններ տալու արդի սոցիալական զարգացման ամենահրատապ հարցերին և մարդկությանը ցույց տալու ամենաբարդ սոցիալ-քաղաքական իրավիճակներից դուրս գալու ռեալ ուղին։ Իր ներգործունության ուժով մարքսիզմ-լենինիզմը որոշակիորեն իր դրոշմն է դնում արդի դարաշրջանի քաղաքական ու հոգևոր կյանքի ընթացքի վրա։

Մարքս-լենինյան ուսմունքի ամեն երանգի գաղափարական հակառակորդներն ստիպված են խոստովանել, որ այն վաղուց դարձել է մեր դարաշրջանի որոշիչ քաղաքական ու հոգևոր գործոնը։ Այս կապակցությամբ Արևմուտքում հայտնի քաղաքագետ պրոֆեսոր Ժ. Բյուրդոն նկատում է. «Մեր օրերում մարքսիզմը դարձել է ինչ-որ ընդհանուր մթնոլորտ, որից չի կարող անջատվել հասարակության քաղաքական ու գաղափարախոսական կյանքը։ Առանց նրա արդի քաղաքական միտքը ռեալ սոցիալ-քաղաքական իրականությունից կտրըված տեսք ունի»։ Ոչ պակաս որոշակի է արտահայտվում նաև Արևմուտքում հայտնի սոցիոլոգ Մ. Կլավելը. «Ամեն մի միտք,— շեշտում է նա,— որ մարքսիզմից դուրս է, անպայմանորեն կլինի հին և բուրժուական։ Խոսքն այն մասին չէ, որ ոչ ոք իրավունք չունի մտածելու Մարքսից հետո և նրա սխեմից դուրս, այլ այն մասին, որ դա այլևս հնարավոր չէ։ Գոյություն չունի մի փիլիսոփայություն, որը կարողանար մտածել մարքսիզմի շրջանակներից դուրս»։ Ամենևին էլ մարքսիզմին չհամակրող արդի բուրժուական գաղափարախոսները ճիշտ են նշում, որ մեր օրերում հազիվ թե հնարավոր է գտնել այնպիսի փիլիսոփայական տեսություն կամ սոցիալ-քաղաքական ըմբռնում, որը բացահայտորեն կամ քողարկված չորոշեր իր վերաբերմունքը մարքսիզմ-լենինիզմի և նրա մեթոդաբանական սկզբունքների նկատմամբ։ Ընդունելով մարքս-լենինյան տեսության ազդեցությունը արևմտյան հասարակության կյանքի վրա, միաժամանակ մարքսիզմ-լենինիզմի հակառակորդները փորձում են նենգափոխել այդ ներազդման բուն պատճառները։

Արդի սոցիալ-դեմոկրատիայի քաղաքական փիլիսոփայության տեսաբանների վերաբերմունքը մարքսիզմ-լենինիզմի նկատմամբ միանշանակ չէ և բավականին հակասական է։ Զինված գիտական կոմունիզմի հիմնադիրների տեսական ժառանգության նկատմամբ սոցիալ-դեմոկրատիայի գաղափարախոսների դիրքորոշման նրբերանգների բազմազանությանը, հստակորեն երևում է, մի կողմից, մարքսիզմ-լենինիզմի տեսական դրույթների ու մեթոդաբանական սկզբունքների ուղղակի ժխտման ու աղավաղման միտում, մյուս կողմից, արդի բուրժուական փիլիսոփայության ու սոցիոլոգիայի ընդհանուր տեսական դրույթներն ու մեթոդաբանական սկզբունքները սոցիալիստական ու սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների քաղաքական տեսությանն ու պրակտի-

կային հարմարեցնելու, այսինքն՝ սոցիալ-դեմոկրատական ու բուրժուական գա-
ղափարախոսությունների միաձուլման ձգտում։
Իբրև դրա վկայություն կարող է ծառայել սոցիալ-դեմոկրատների կապի-
տուլյացիան Կարլ Ռայմունդ Պոպերի «քննադատական ռացիոնալիզմի» փիլի-
սոփայությանը և դրա հիմնական դրույթները սոցիալ-դեմոկրատիզմի քաղա-
քական տեսությունների ինչ-որ մեթոդաբանական հիմնավորման տեղ ընդու-
նելը։ «Պոպերը,— գրել է Մեծ Բրիտանիայի լեյբորիստական կուսակցության
տեսաբաններից մեկը՝ Բ. Մեջին,— ինչպես ոչ ոք նրանից առաջ և հետո, մշա-
կեց մի տեսություն, որը պետք է դառնա դեմոկրատական սոցիալիզմի փիլի-
սոփայության հիմքը», այսինքն՝ արդի կապիտալիստական Արևմուտքի սոցիա-
լիստական և սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների քաղաքական փի-
լիսոփայության հիմքը։ Այդ կուսակցություններում նման դիրք են գրավում
ամենից առաջ աջ կողմնորոշման ղեկավարներն ու գաղափարախոսները, որոնք
ընդհանուր առմամբ որոշում են արդի սոցիալ-դեմոկրատական շարժման քա-
ղաքականությունն ու գաղափարախոսությունը։
Սոցիալ-դեմոկրատիզմի գաղափարախոսների՝ արդի բուրժուական փիլի-
սոփայությանը, և ամենից առաջ, «քննադատական ռացիոնալիզմի փիլիսոփա-
յությանը» (հատկապես Պոպերի առաջադրած մեթոդաբանական դրույթներին)
դիմելը համապատասխանում է մարքսիզմ-լենինիզմի, այդ թվում նաև դիա-
լեկտիկական մատերիալիզմի՝ որպես գիտական իմացության համընդհանուր
մեթոդի նկատմամբ մերժողական, համապարփակ-քննադատական վերաբեր-
մունքի դիրքորոշմանը։ Չէ որ դեռևս դարասկզբին մարքսիզմի հիմնարար տե-
սական դրույթների վերանայման Բեռնշտեյնի առաջադրած կոչը մինչ օրս
մնում է արդի սոցիալ-դեմոկրատիայի տեսական գործունեության հիմնական
մեթոդաբանական լեյտմոտիվը։ Պատահական չէ, որ Իտալիայի սոցիալիստա-
կան կուսակցության ղեկավարներից Բ. Կրաքսին գրել է, թե սոցիալ-դեմո-
կրատներին ամենից առաջ միավորում է ընդհանուր մեթոդը՝ «ռևիզիոնիզմը,
որպես մեթոդաբանական սկզբունք և որպես գլխավոր կանոն»։
Ըստ երևույթին, այս դեպքում Կրաքսիին չի կարելի հանդիմանել դատո-
ղությունների անճշտության մեջ։ Իրոք, մարքսիզմ-լենինիզմի հիմնարար տե-
սական դրույթներից և մեթոդաբանական սկզբունքներից հրաժարումը և արդի
բուրժուական ու մանրբուրժուական ռեֆորմիզմի գաղափարախոսության մեջ
այն տարրալուծելու փորձերն են միավորում սոցիալ-դեմոկրատիզմի գաղա-
փարախոսներին, չնայած նրանց կիրառած նախադրույթների ու փաստարկների
առերևույթ բազմազանությանը։
Այդ իսկ պատճառով գիտական տեսությունների, հայացքների, գաղափար-
ների պոպերյան «համընդհանուր քննադատությունը» շատ մոտ գտնվեց հա-
սարակական զարգացման մարքս-լենինյան ըմբռնման և նրա փիլիսոփայական
հիմունքների քննադատության սոցիալ-դեմոկրատական հարցադրմանը։ Բ.
Կրաքսիի համար, օրինակ, սոցիալիզմի սոցիալ-դեմոկրատական մոդելի
ստեղծման հիմնական մեթոդաբանական սկզբունքը «մշտական ռևիզիան է,
այսինքն աշխատանքային վարկածների ստուգման, գործողությամբ դրանց
հաստատման սկզբունքը» (նկատենք, որ ռեալ սոցիալիզմը չի ընդունվում
որպես նման գործնական հաստատում, քանի որ հակասում է Կրաքսիի սո-
ցիալ-քաղաքական հայացքներին)։
**Քննադատական ռացիոնալիզմը և սոցիալ-դեմոկրատիան** աշխատության
հեղինակները ևս, խոսելով սոցիալիզմի այս կամ այն մոդելի ընտրությունը
պայմանավորող հիմնական գործոնի մասին, նախընտրում են օգտագործել հա-
կացությունը մի այնպիսի քննադատության, որը «լինելով մեթոդաբանական
սկզբունք, հանդիսանում է նաև իմացության առաջընթացի հիմնական եղա-
նակը, հիմնական մեթոդը»։ Սակայն թե՛ մեկ, թե՛ մյուս դեպքում խոսքը վե-
րաբերում է ռևիզիային, առհասարակ գիտական սոցիալիզմի տեսության և,
մասնավորապես, նրա մեթոդաբանության քննադատությանը։
Քննադատական ռացիոնալիզմի և, հատկապես, Պոպերի առաջադրած
«համընդհանուր ժխտման» սկզբունքը հակադրելով դիալեկտիկական մատե-
րիալիզմին՝ որպես գիտական իմացության մեթոդի, սոցիալիստական և սո-



ցիալ-դեմոկրատական կուսակցությունների տեսաբանները ձգնում են հավաս-
տիացնել, թե արդի գիտությունը իբր վկայում է հասարակական երևույթների
բացատրմանը դիալեկտիկական մոտեցման անարդյունավետությունը։ Այսպես,
օրինակ, վերոհիշյալ գրքի հեղինակները՝ Ֆր. Էբերտի ֆոնդի հետազոտական
ինստիտուտի գիտաշխատողներ Գեորգ Լյուրսը, Թիլո Սարացինը, Ֆրիտցել
Շպրեերը և Բոննի համալսարանի գիտաշխատող Մանֆրեդ Տիտցելը, հենվելով
Պոպերի «համընդհանուր ժխտման» մեթոդաբանական սկզբունքի վրա, հայ-
տարարում են. «Գոյություն չունեն ո՛չ «դիալեկտիկական մեթոդը», ո՛չ պատ-
մական մատերիալիզմի հիմքում ընկած պատմական պրոցեսի օրինաչափ զար-
գացման վերաբերյալ պատմափիլիսոփայական հայեցողությունը, որոնք պայ-
մանավորում են Մարքսի հետևությունները կապիտալիզմի կործանման և կո-
մունիզմի հաստատման անխուսափելիության մասին»։ Նրանք պնդում են, թե
դիալեկտիկական մատերիալիզմը պիտանի չէ հասարակական կյանքի ամե-
նաբարդ երևույթների ու պրոցեսների բացատրման համար արդեն այն իսկ
պատճառով, որ հավակնում է իմացության համընդհանուր մեթոդի ստատու-
սի։ Գիտությունը միշտ գործ ունի իրականության կոնկրետ երևույթների հետ,
որոնք իրենց բազմազանությամբ անսահման են։ Իսկ քանի որ իմացության
ամեն մի առարկա յուրահատուկ է և այդ իսկ պատճառով առանձնահատուկ
մոտեցում է պահանջում, ապա ամեն մի գիտական տեսություն, գիտական
իմացության ցանկացած մեթոդ կարող է պիտանի լինել միայն երևույթների
սահմանափակ շրջանակի բացատրության համար և պահպանում է իր նշանա-
կությունը միայն այնքան ժամանակ, քանի կոնկրետ իրականությունը այն չի
հերքել և մղել այն փոխարինելու առավել չափավոր մեթոդով ու տեսությամբ։
Չկա իմացության այնպիսի մեթոդ, գրում են այդ հեղինակները, որոնց հնա-
րավորությունները սահմանափակված չլինեին տարածական-ժամանակային
բնութագրումներով։ Դիալեկտիկան, ինչպես և ցանկացած այլ մեթոդ, նույն-
պես կիրառման սահմանափակ ոլորտ ունի։
Նման փաստարկումը վկայում է ամենից առաջ այն, որ քննադատական
ռացիոնալիզմի կողմնակիցները դիալեկտիկական մատերիալիզմի՝ որպես գի-
տական իմացության համընդհանուր մեթոդի, էությունը չեն ըմբռնել։ Դիա-
լեկտիկական մատերիալիզմը ամենևին էլ չի հավակնում, որպեսզի իր օգնու-
թյամբ բացատրվեն օբյեկտիվ աշխարհում կատարվող անսահմանորեն բազ-
մազան բոլոր պրոցեսներն ու երևույթները, այլ գիտելիքներ է տալիս նյութա-
կան աշխարհի համընդհանուր կապերի ու հարաբերությունների, շարժման ու
զարգացման համընդհանուր օրենքների մասին, որը նրան հնարավորություն
է ընձեռում հանդես գալու որպես կոնկրետ նյութական գոյավորումների ու-
սումնասիրման մեթոդաբանական հիմք։
Անկասկած, ցանկացած գիտական տեսություն պիտանի է միայն երևույթ-
ների սահմանափակ շրջանակի բացատրության համար և որոշ ժամանակ անց
այն անհրաժեշտորեն փոխարինվում է նորով։ Այս առումով դիալեկտիկական
մատերիալիզմի և քննադատական ռացիոնալիզմի կողմնակիցների դիրքերը,
կարելի է ասել, համընկնում են։ Սկզբունքորեն դրանք տարբերվում են այլ
բանում։ Դիալեկտիկական մատերիալիզմի համար գիտական տեսությունների
փոխարինումը օբյեկտիվ ճշմարտության առավել խոր և լիակատար իմացու-
թյան անվերջանալի պրոցեսի դրսևորումն է մարդու կողմից։ Ընդհակառակը,
քննադատական ռացիոնալիզմի ներկայացուցիչների համար կարևոր է ցանկա-
ցած տեսության, ճշմարտության, գիտական լուծման սոսկ հարաբերականու-
թյան հանգամանքը։ Մերժելով դիալեկտիկան, որպես գիտական իմացության
համընդհանուր փիլիսոփայական մեթոդ, ժխտելով դրա հիմնական սկզբունք-
ների և դրույթների (որոնցից մեկը կապված է ոչ միայն հարաբերական, այլև
բացարձակ ճշմարտության ընդունման հետ) համընդհանրությունը, քննադա-
տական ռացիոնալիզմը դրանով իսկ գիտական իմացությունը մեկնաբանելիս
անցնում է ռելյատիվիզմի դիրքերը, ուղիղ ճանապարհ բացելով սոփեստության
և էկլեկտիկայի համար։ Սակայն այդ հանգամանքը չի խանգարում քննադա-
տական ռացիոնալիզմի փիլիսոփայության կողմնակիցներին սեփական մեղքն
ուրիշի վրա բարդելու և պնդելու, թե մարքսիստական դիալեկտիկան կարող է,

իբր, «արդարացնել ամեն ինչ», որ իր դոգմատիկության և պահպանողականության հետևանքով այն, իբրև թե, ցանկացած երևույթ, ցանկացած պրոցես միտումնավոր կերպով է մեկնաբանում:

Ինչպես հայտնի է, մարքսիզմ-լենինիզմը, ղեկավարվելով դիալեկտիկական մատերիալիզմի սկզբունքներով, առաջինը կարողացավ բացահայտել կապիտալիստական հասարակարգի հակամարդկային էությունը, ցույց տալ մշտական տնտեսական ճգնաժամերի, սոցիալական հակասությունների սրման, խրոնիկական գործազրկության, բուրժուական հոգևոր կուլտուրայի անկման և այլ երևույթների խոր պատճառները: Արդյոք այս ամենն ի նկատի ունենալով չէ, որ Լյուրսը, Տիտցելը, Շպրեերը և արդի սոցիալ-դեմոկրատիզմի մյուս գաղափարախոսները հայտարարում են, թե մարքսիստական դիալեկտիկան, իբր, ամեն ինչ միտումնավոր կերպով է բացատրում և որ նրա օգնությամբ կարելի է ամեն բան ապացուցել:

ԳՍԴԿ-ի աչքի ընկնող գործիչ Հայներ Ֆլորը հավաստիացնում է, թե դիալեկտիկների համար ընդունելի չէ խորամուխ լինել այնպիսի իրավիճակներում, որոնք դժվար է տեղավորել նախապես առաջադրված սխեմայի մեջ: Այդ իսկ պատճառով, եզրակացնում է նա, սոցիալ-դեմոկրատները իրենց քաղաքական ու գաղափարախոսական գործունեությունում «ունենալով սոցիալիստական հայացքներ և հետապնդելով սոցիալիստական նպատակներ, այնուհանդերձ չեն ղեկավարվում, այսպես կոչված, դիալեկտիկական մեթոդով»:

Նման հարցադրումը (սոցիալիստական իդեալներն առանց դիալեկտիկական մեթոդի «իրականացնելու հնարավորությունը», այսինքն՝ կապիտալիստական հասարակական հարաբերություններն առանց հեղափոխության սոցիալիստական հիմունքներով վերակառուցելը) միանգամայն համապատասխանում է արդի սոցիալ-դեմոկրատիայի քաղաքական ու գաղափարախոսական գործունեության բովանդակությանը, որով նա ըստ էության հանդես է գալիս կապիտալիստական երկրներում գոյություն ունեցող սոցիալ-քաղաքական կարգի պահպանման օգտին: Այդ իսկ պատճառով Մեծ Բրիտանիայի լեյբորիստական կուսակցության աչքի ընկնող տեսաբաններից Ջ. Սևիլը համառորեն պնդում է. «Լեյբորիզմը եղել է դասակարգային համագործակցության տեսությունն ու պրակտիկան, ավանդույթը, որը տեսության մեջ (միշտ) և գործնականում (շատ հաճախ) ելել է կապիտալի և աշխատանքի միասնությունից, ինչպես նաև արդյունաբերության մեջ բախումները վերացնելիս ընդունել է արբիտրաժի և համաձայնեցման ընթացակարգի անհրաժեշտությունը»: «Լեյբորիզմը,— եզրափակում է Սևիլը,— իր ձևավորումից ի վեր հանդիսանում է մի այնպիսի տեսություն և պրակտիկա, որը հենվում է գոյություն ունեցող հասարակության շրջանակներում սոցիալական փոփոխությունների հնարավորությունների վրա»:

Այսպիսով, արդի սոցիալ-դեմոկրատիայի տեսաբանների կողմից դիալեկտիկական մատերիալիզմի ժխտման փաստում սերտորեն միահյուսվել են նրանց մեթոդաբանական սկզբունքների առանձնահատկությունները և սոցիալ-քաղաքական հայացքները: Ըստ էության, նրանց այն պնդումները, թե ոչ մի մեթոդաբանություն «հնարավորություն չի ընձեռում ռացիոնալ կերպով կանխագուշակելու պատմական պրոցեսների ընթացքը», օրգանապես միահյուսվում են նրանց կողմից հասարակական զարգացման հեռանկարների գիտական կանխատեսման, հետևաբար, նաև սոցիալիզմի գիտական տեսության հնարավորության ժխտման հետ: Դրանով իսկ արդի սոցիալ-դեմոկրատիայի քաղաքական փիլիսոփայության ներկայացուցիչները ժխտում են այն տեսական հիմքը, որի վրա է հիմնվում իրենց սեփական փիլիսոփայական և գաղափարախոսական համակարգը: Չէ որ կապիտալիստական Արևմուտքի այդ քաղաքական շարժման փիլիսոփայական դոկտրինայի նպատակադրությունը, ըստ էության, նույնպես իրենից ներկայացնում է հնարավոր ապագա հասարակական վիճակի կանխատեսման մի որոշակի տարբերակ: Այդ դրույթը, իհարկե, դուրս չի գալիս սոցիալական ուտոպիաների շրջանակներից այն կողմ: Եվ, այնուամենայնիվ, դա սոցիալական կանխատեսման որոշակի եղանակ է, մարդկության պատմական պրոցեսը, պատմական շարժման ընդհանուր ընթացքը,



ուղղությունը, ընդհանուր միտումը և հնարավոր արդյունքը կանխագուշակելու փորձ:

Այդ կարգի սոցիալական կանխատեսումը գլխավորապես ելնում է հասարակության սոցիալական հնարավորություններից, առկա հասարակական վիճակի մասին աղճատված պատկերացումներից, միանգամայն սահմանափակ փաստական նյութից և գաղափարախոսի սուբյեկտիվ ցանկությունից: Նման սոցիալական նախագծերի վերաբերյալ, անշուշտ, արդարացի է այն կարծիքը, թե դրանք ի վիճակի չեն «ռացիոնալ կերպով կանխատեսել պատմական պրոցեսների ընթացքը»: Բայց սոցիալական իրականության համակողմանի և խոր վերլուծության վրա հենվող (իսկ հենց այդպիսին են մարքսիստական տեսության հետևությունները) սոցիալական կանխատեսումը հնարավորություն է ընձեռում ճիշտ կանխագուշակելու մարդկային հասարակության պատմական զարգացման ընդհանուր ուղղությունը, հիմնական փուլերը:

Եթե տեսությունից բխող հետևությունները, նախագուշակումները, կանխատեսումները հաստատվում են հասարակական զարգացման պրակտիկայով, նշանակում է նման տեսությունը ճիշտ է արտացոլում սոցիալական իրականության օրինաչափությունները: Այն ճիշտ է կողմնորոշում մարդկանց շրջապատող աշխարհում, ճիշտ է նպատակամղում նրանց գործունեությունը, հնարավոր դարձնում վերջինիս պլանավորումը, զարգացման ընթացքի կանխատեսումը, մարդկանց համատեղ կենսագործունեության ապագա կազմակերպչական ձևերի ու եղանակների ճիշտ նախագուշակումը:

Այստեղից էլ ակնբախ է դառնում Պոպերի փիլիսոփայության սոցիալ-դեմոկրատական հետևորդների այն պնդման չհիմնավորվածությունը, թե կան տեսություններ, որոնք ոչ մի տվյալ չեն հաղորդում հասարակության ռեալ վիճակի մասին, չեն կարող հիմնավորվել որպես ճշմարտություն և այդուհանդերձ, իբր թե, արտահայտում են զարգացման որոշակի տրամաբանական հնարավորություն:

Էմպիրիկ նյութի վերլուծությունից ելնող տեսության հակադրումը մարդկային հասարակության զարգացման այս կամ այն ուղու վերաբերյալ սոսկ տրամաբանական հիմնավորում տվող տեսություններին արատավոր է: Դա ակնբախորեն երևում է մարքսիզմի օրինակով, որի հետևությունները ապագա հասարակական վիճակի մասին ներկայացնում էին տրամաբանորեն հիմնավորված հնարավորություն և միաժամանակ հենվում էին XIX դարի սոցիալական իրականությունից վերցված հսկայածավալ փաստական նյութի վերլուծության վրա: Պատմությունը հավաստեց մարքսիզմի դրույթների ճշմարտացիությունը: Սոցիալական հեղափոխության օրինաչափ բնույթը, կապիտալիզմի կործանման և սոցիալիստական հասարակարգի ստեղծման պատմական անհրաժեշտությունը ապացուցված են համաշխարհային սոցիալիստական սիստեմի գոյության բուն փաստով, հաստատվում են սոցիալիստական ու կոմունիստական շինարարության պրակտիկայով:

Արդի սոցիալ-դեմոկրատիզմի քաղաքական փիլիսոփայության ոչ բոլոր ներկայացուցիչներն են բաժանում Կարլ Պոպերի «քննադատական ռացիոնալիզմի» փիլիսոփայության սկզբունքներն ու դրույթները և նրա առաջադրած մեթոդաբանական սկզբունքները: Այսպես, օրինակ, պոպերյան փիլիսոփայության տեսական դրույթների նկատմամբ որոշակի զգուշավորություն է ցուցաբերում ԳՍԴԿ-ի նշանավոր տեսաբան Հայներ Ֆլորը: Նա այն կարծիքին է, թե Պոպերի «քննադատական ռացիոնալիզմը» իբրև սոցիալ-դեմոկրատական շարժման քաղաքական փիլիսոփայություն լիովին ընդունելը կարող է կուսակցության մեջ բանավեճեր հրահրել: Ֆլորն ինքը, ջանալով ապացուցել «էմպիրիկ— վերլուծական գիտության» գիտապրակտիկ արդյունավետությունը, դրանով իսկ ըստ էության հանդես է գալիս Պոպերի դիրքորոշման դեմ: Ըստ նրա, սխալ է այն տեսակետը, թե «էմպիրիկ— վերլուծական գիտությունը սոսկ տեխնիկական հանձնարարականներ է տալիս, ընդ որում, իր ուշադրությունից դուրս թողնելով գործնական բնույթի պրոբլեմները»: Ֆլորը համառորեն պնդում է, թե էմպիրիկ-վերլուծական գիտությունն անհրաժեշտ և ճիշտ ինֆորմացիա է տալիս այն ամենի մասին, ինչ հնարավոր է իրականացնել գործ-

Զարգացած սոցիալիզմի

կատարելագործման պրոբլեմներ

# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՐԴԱՐՈՒԹՅԱՆ ԲԱՐՈՅԱԿԱՆ ՈՒԺԸ

**Ա. ՍԻՄՈՆՅԱՆ**

*ՀԱՆԴԵՍ ԳԱԼՈՎ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ փետրվարյան պլենումում՝ ընկեր Կ. Ու. Չեռնենկոն ասաց. «Սովետական կարգերի բուն հիմքում է դրված սոցիալական արդարությունը։ Եվ դրանում է նրա հսկայական ուժը։ Ուստի շատ կարևոր է, որ դա անշեղորեն կիրառվի ամենօրյա գործերում, անկախ նրանից՝ խոսքը վերաբերում է աշխատավարձին ու պարգևավճարներին, բնակարանների կամ ուղեգրերի բաշխմանը, պարգևատրումներին, մի խոսքով՝ պետք է հասնել այն բանին, որ ամեն ինչ արվի արդարությամբ, մեր ընդհանուր գործի մեջ յուրաքանչյուր մարդու ներդրած աշխատանքային ավանդին համապատասխան»։*

*Հիրավի, մարդկության պատմության մեջ ամենաարդարացի հասարակությունը սոցիալիստականն է, որն անցել է իր լինելիության մի շարք կարևոր փուլեր և այսօր հասել է սոցիալական առաջընթացի՝ զարգացած սոցիալիզմի նախնական փուլին։ Հասուն սոցիալիզմի պայմաններում ակներևաբար դրսևորվում է սոցիալական արդարության բազմակողմանի, համապարփակ բնույթը, որն ըստ էության հանդես է գալիս հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։ Սոցիալական արդարության առավել ամբողջական իրականացումը զարգացած սոցիալիզմի կատարելագործման կարևոր պայմանն է։*

*Սոցիալիզմի առաջընթացի ուղին բարդ է ու հակասական, որի գլխավոր միտումը մարդկության անցումն է հասարակական լինելիության բարձրագույն ձևերին։ Այդ շարժման օրինաչափությունը բացահայտել ու հիմնավորել է մարքս-լենինյան տեսությունը, որի ճշմարտացիությունը հաստատել են կյանքը, հասարակական պրակտիկան։*

*Մարդկության պատմությունը վկայում է, որ սոցիալական շարժումների առանցքային հարցերի շարքում մշտապես էական տեղ են գրավել սոցիալական արդարությունը, ժողովրդական զանգվածների համար գոյության իրոք մարդկային պայմաններ ստեղծելու պրոբլեմը։ Հիշենք, որ արդարության գաղափարը, իբրև հասարակական հարաբերությունների ինտեգրատիվ գնահատական, արծարծվել է տակավին վաղ անցյալում, մշակվել համաշխարհային կուլտուրայի զարգացման ողջ ընթացքում։ Այն, անշուշտ, առաջնակարգ տեղ է գրավում հոգևոր արժույթների շարքում, կենսական է աշխատավոր մարդկանց համար։*

*Արդարության գաղափարն էական տեղ ունի մարքս-լենինյան աշխարհըմբռնման մեջ՝ իբրև կարևորագույն կոմունիստական իդեալ։ «Արդարություն», «մարդկայնություն», «ազատություն»,— գրել է Ֆ. Էնգելսը,— կարող են հազար անգամ պահանջել, սակայն եթե որևէ բան անհնարին է, իրականում ոչ*



*մի դեպքում չի կատարվում, մնալով որպես «դատարկ երազ» (Տե՛ս* К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 6, с. 292)։

*Կոմունիստների համար սոցիալական արդարության գաղափարը վերացական պատրանք չէ, այն կոնկրետ հասկացություն է, որի էությունն ու բովանդակությունը շատ հստակ են ու պարզ, ինչպես իրականության մեջ տվյալ իդեալի մարմնավորման ուղիներն ու պայմանները։ Սոցիալական արդարության պրոբլեմի նկատմամբ դիալեկտիկամատերիալիստական մոտեցումը ենթադրում է հեղափոխական պայքարի անհրաժեշտություն, աշխատանքի շահագործման, հասարակական անհավասարության, մարդու կողմից մարդուն ճնշելու բոլոր ձևերի վերացում։ Մարքս-լենինյան մեթոդաբանությունը պահանջում է նաև սոցիալական արդարության պրոբլեմը քննել կոնկրետ պատմական մեկնակետից։ Միայն այդպես կարելի է հասկանալ, թե ինչու այն դժվարըմբռնելի է դասակարգային-հակամարտ շահագործողական հասարակարգում, և ինչպիսին են դրա գոյավորման փուլերի որակական բնութագրերը սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո։*

*Արդարության գաղափարն իբրև նպատակ ու գնահատություն, սկզբունք ու սոցիալական իդեալ, լոկ հետաքրքրությունից բխող հարց չէ։ Բանն այն է, որ դա, ինչպես և շատ այլ բարձր արժույթներ բովանդակող հասկացությունները, խորապես պատմական են։ Կյանքը տալիս է բազում օրինակներ, երբ լեզվաշղարշի տակ հաճախ քողարկվում է տրամագծորեն հակադիր բովանդակություն։ Արդարության դրոշները հաճախ են թափահարել նրանք, ովքեր դրա գաղափարն օգտագործել են սև ու անարդար գործերի համար։ Հարկ է ասել, որ արդարության ըմբռնման վերաբերյալ վաղուց ի վեր կան մասնավոր սեփականատիրական, վաշխառուական հարաբերությունների ոգով տոգորված մեկնաբանություններ։ Տիրահոչակ համարժեքային փոխանակությունը, որը հենվում է շուկայի, պահանջարկի ու առաջարկի օրենքի առնչությունների վրա, երկար ժամանակ տեսության մեջ արծարծվել է իբրև արդարության յուրօրինակ ապացույց։ Մինչդեռ կյանքը համոզիչ վկայում է, որ հակամարտ դասակարգային հասարակությունում չկա ու չի կարող լինել բոլորի համար միասնական բարու և չարի, արդարության և անարդարության ըմբռնում։ Տնտեսապես ու քաղաքականապես իշխող դասակարգերի համար արդարությունը մըշտապես առնչվել է հիերարխիական անհավասարության ամրապնդման, սեփականատիրական իրավունքների ու ընտրանիի արտոնությունների պաշտպանության հետ։*

*Սակայն աշխատավորների շրջանում արդարության վերաբերյալ հասունանում էր բոլորովին այլ պատկերացում, ուր դրոշմվում էին ընչազուրկների դասակարգային շահագրգռության ու համամարդկային արժեքներ։ Արդարության գաղափարը խորապես թափանցում է հասարակական ու առօրեական գիտակցության մեջ, կենցաղում ու բարքերում, ամեն անհատի ներաշխարհում։ Դա ոչ այնքան վերլուծվում և իմաստավորվում է բանականորեն, որքան ընկալվում է ենթագիտակցաբար, հաճախ ակնբախ պարզությամբ։*

*Մարդիկ, ինչպես վկայում է կենսափորձը, երբեմն չեն կարող բանականորեն հիմնավորել արդարության կամ անարդարության իրենց գնահատումները այս կամ այն արարքի, իշխանության գործելակերպի, տնտեսական խնդրի լուծման վերաբերյալ։ Սակայն նրանք այդ զգում են, քանզի որոշակի արարքը, որոշումը ասես թե կշռադատված են բարոյականության ու արդարության ներքին չափանիշներով։ Անշուշտ, այդ զգացման հետ չի կարելի հաշվի չնստել, հարկավոր է այն ուսումնասիրել ու իմաստավորել։ Դրանում խտացված է ժողովրդական զանգվածների պատմական փորձը, դարերի իմաստությունը։*

*Արդարությունը ներառնում է հասարակության ու անհատի, դասակարգերի ու սոցիալական խմբերի փոխհարաբերությունները, բնութագրում մարդկային գործունեությունը և արդյունքները։ Սոցիալական արդարության իրականացման վճռորոշ նախադրյալ է հասարակական հարաբերությունների ողջ համակարգի արմատական փոփոխումը։ Սոցիալիստական հասարակարգն ու այրե-*

լակերպը հիմնված են կոլեկտիվիզմի սկզբունքի վրա։ Այստեղ դասակարգա-
յին ու ազգային ներհակությունների վերացումը, մարդկանց նոր պատմական
հանրության՝ սովետական ժողովրդի ձևավորումը հարստացնում են սոցիալա-
կան արդարության բովանդակությունը. բարեկամական դասակարգերի ու սո-
ցիալական խմբերի մերձեցման պրոցեսը, որը հասուն սոցիալիզմի շրջանակ-
ներում միտում է ավարտման, դարձել է ավելի հստակ ու անմիջական։

Բնորոշելով աշխարհի ու մարդու պատմամատերիալիստական ըմբռնումը՝
Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը ցույց տվին այն բոլոր տեսությունների սնանկու-
թյունը, ուր հասարակական կյանքը ներկայացված է լոկ վերացարկված ձևով։
Նրանք նշեցին, որ կենդանի, իրական մարդիկ իրենք իրենց մեջ ամփոփված
չեն, այլ շաղկապված են հասարակական կապերով, առաջին հերթին՝ արտա-
դրահարաբերություններով, կազմելով ամբողջություն, այսինքն՝ հասարակու-
թյուն։ Մարդու՝ իբրև սոցիալական էակի, էությունը բոլոր հասարակական
հարաբերությունների միագումարն է, այդ հարաբերությունները մարմնավոր-
վում են անձի անհատականության մեջ։

Մարքս-լենինյան տեսությունը բացասում է մասնավոր սեփականատիրու-
թյան ծնած ինդիվիդուալիստական հայացքները արդարության մասին, որոնք
բուռն ծաղկում են իմպերիալիզմի պայմաններում։ Ծայրահեղ անհատապաշ-
տությունն անձնավորությանն ամփոփում է ինքն իր մեջ, ամեն ինչ չափում
նրա ծավալներով։ Գերաճած, եսակենտրոն հայացքով աշխարհին նայող անձը
արդար է կարծում միայն այն, ինչ հաճո է նրան, նրա սխորժակին, կրքերին
ու քմայքներին։

Մեր ապրելակերպը ժխտում է նաև անհատի պահանջմունքների ու ձգ-
տումների անտեսումը, որը մարդուն դիմազուրկ է դարձնում։ Անմարդկային է
անհատի վերածումը սոսկ միջոցի՝ անձից վեր նպատակների հասնելու միտու-
մով։ Կուսակցության հռչակած «ամեն ինչ մարդու համար, հանուն նրա բարո-
րության» նշանաբանը, հիրավի բարձրագույն նպատակի՝ կյանքի կոմունիս-
տական նորացման խնդիրների արդարացի արտահայտությունն է։

Ըստ մարքս-լենինյան տեսության, հասարակությունը և անհատը անջատ
չեն իրարից, նրանք դիալեկտիկական միասնության երկու կողմերն են, որոնք
փոխադարձաբար պայմանավորում են իրար։ Հանրություն կազմող անձնավո-
րություններից վեր հասարակությունը լոկ աբստրակցիա է, անձնավորությու-
նը հասարակական առնչություններից դուրս սոսկ կենսաբանական էակ է։
Այս մեթոդաբանական սկզբունքը բացահայտում է սոցիալական արդարության
կոնկրետ պատմական էության ըմբռնման ուղին։ Այստեղ ուրվագծվում է մարդ-
կային պահանջմունքների առաջացման ու բավարարման հասարակական մե-
խանիզմը։ Արդարացի է սոցիալական այն կառուցվածքը, որի նպատակն է
լուծել մարդու առկա պահանջմունքների դինամիկ խնդիրը։ Քանի որ պա-
հանջմունքները հարափոփոխ են, և գործում է դրանց վեհացման օրենքը, ար-
դարությունը ևս ստատիկ չէ։

Անհատ—հասարակություն կապում արդարության պահպանման անհրա-
ժեշտությունը վերաբերում է երկու կողմերին, որտեղ նկատի են առնվում ո՛չ
միայն անհատական, այլև կոլեկտիվ, հասարակական պահանջմունքները։ Այս
առնչությամբ հարց է ծագում. ի՞նչ կարող է ակնկալել անհատը հասարակու-
թյան ձեռք բերած նյութական ու հոգևոր արտադրության մակարդակից և հա-
սարակական հարաբերությունների որոշակի կացությունից։ Միևնույն ժամա-
նակ տվյալ փուլում ի՞նչ է պահանջում հասարակությունն իր յուրաքանչյուր
անդամից։ Անհատի սպասումների և հասարակության պահանջների առավել
համապատասխանությունն իրավամբ գնահատվում է իբրև արդարության դրը-
սևորման առկա մակարդակ։ Այսպես՝ մեծ Հայրենականի ծանր տարիներին,
երբ դրված էր սովետական հասարակարգի գոյության հարցը, սոցիալիստա-
կան հայրենիքը մինչև արյան վերջին կաթիլը պաշտպանելու պահանջը, անձ-
նվիրության, նույնիսկ անձնազոհության կոչը միակ արդարացին էին։ Այն
ընդունեցին զանգվածները։ Այժմ երկրի առջև հրատապ խնդիր է դրված՝ արա-
գացնել աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը, բարձրացնել հա-



սարակական արտադրության արդյունավետությունը, աշխատանքի որակը,
ավելացնել յուրաքանչյուրի անձնական ներդրումը ընդհանուր գործում՝ զու-
գակցված պետական, արտադրական ու աշխատանքային կարգապահության
ամրապնդման հետ. այն ևս արդարացի կոչ է։

Կուսակցության XXVI համագումարը շեշտեց, որ ամեն մի բանվոր, ամեն
մի աշխատող պետք է զարկ տա նախաձեռնողական, ստեղծագործական աշ-
խատանքին, իսկական տիրոջ վերաբերմունք ցուցաբերի ժողովրդական բարիքի
նկատմամբ։ Այստեղ արդարությունը դրսևորվում է իբրև հասարակական
պարտք, հասարակական պահանջմունքների ապահովման գործոն։ Անշուշտ ար-
դարացի է, երբ կոմունիզմի իդեալների ճշմարտացիության համոզումը, հայ-
րենասիրական ավյունը, ինտերնացիոնալ զգացումը վեր են բարձրանում եսա-
մոլական մղումներից, ի հայտ բերելով մարդու սոցիալական էության այնպիսի
հատկանիշներ, ինչպիսին են արժանապատվությունը, ոգու ազնվությունը
և այլն։

Մարքս-լենինյան տեսությունը, նոր կյանքի կառուցման փորձը վկայում
են, որ սոցիալիզմը, իբրև կոմունիզմի առաջին փուլ, ի վիճակի չէ ապահովելու
լիակատար արդարություն։ Այստեղ այն իրականացվում է օբյեկտիվ հնարա-
վորի ու անհրաժեշտի սահմաններում, սակայն հասուն սոցիալիստական հա-
սարակությանը բնորոշ է պատասխանատվությունը իր յուրաքանչյուր անդամի,
քաղաքացու նկատմամբ։ Սովետական մարդիկ քաջ գիտակցում են, որ իրենք
պատասխանատու են ավագ սերունդների, պատմության, հայրերի պատգամ-
ների առջև։ Պատմական արդարությունը պահանջում է պահպանել անցյալի
առաջավոր ավանդույթները, դեմոկրատական արժույթները։ Արդարացի է
նաև հոգատարությունը աճող սերնդի նկատմամբ, որին վստահվում է այն
ամենը, ինչ ստեղծել են նախորդ սերունդները։ Միևնույն ժամանակ մեծա-
գույն անարդարություն կլիներ եղած հարստությունների վատնում-շռայլումը
ներկա սերունդների կողմից։ Սակայն արդարացի է այն պահանջը, որ այսօր-
վա սերունդը, ժամանակակիցը չդիմի անհարկի զոհաբերության, ապրի լիար-
յուն կյանքով, նրա համար արվի այն ամենը, ինչ հնարավոր է ինքնազար-
գացման, նյութական բարեկեցության աճի, հոգևոր բարգավաճման համար։
Սովետական մարդկանց ներկա սերնդի համար առկա են նման աճի ու ինք-
նազարգացման հնարավորությունները։ Վկայությունը մեր երկրի սոցիալ-
տնտեսական հաջողություններն են։ Այդ հարցերը հանգամանորեն քննարկ-
վեցին կուսակցության XXVI համագումարից հետո տեղի ունեցած ՍՄԿԿ Կենտ-
կոմի պլենումներում։ Սոցիալիստական հասարակության նյութական հնարա-
վորությունները, զարգացման արդի փուլի հակասությունների բնույթը պայ-
մանավորում են այն ձեռնարկումները, որոնք մեր հասարակական գիտացու-
թյունը գնահատում է իբրև սոցիալական արդարության արտահայտություն։
Այժմ այդ մեկնակետից են սահմանվում աշխատանքային առաջքաշման ուղի-
ները, աշխատանքի խթանման, արտադրությունում խրախուսման ու պախա-
րակման եղանակները, ինչպես նաև ժողովրդական կրթության ու աշխատան-
քային գործունեության նախապատրաստման կոնկրետ ձևերը, աշխատանքա-
յին ռեսուրսների բաշխման յուրահատկությունը, կադրային տեղաշարժերի տե-
րիտորիալ ու ճյուղային ուղղվածությունը։

Արդի պայմաններում բաշխումն ավելի ու ավելի է կորցնում դասակար-
գային բնույթը, աստիճանաբար դադարում է լինել աշխատողի սոցիալական
պատկանելիության հատկանիշ։ Բնականաբար, այստեղ վճռական նշանակու-
թյուն են ստանում անհատական ու պրոֆեսիոնալ հատկանիշները։ Ինչ վե-
րաբերում է առաջիններին, դրանք հանդես են գալիս հասարակության հարըս-
տության բազմապատկման գործում իբրև մարդկանց ոչ միանշանակ ներդրը-
ման բնական հետևանք։ Բարդ է վիճակը մասնագիտական տարբերություննե-
րի ասպարեզում, որտեղ հաճախ զգալի են իներցիայի ուժը, հին սովորույթ-
ները։ Չէ՞ որ բանվորի, ինժեների, բժշկի, ուսուցչի, գիտաշխատողի և ուրիշ-
ների մասին ունեցած պատկերացումը անցյալի համար ճիշտ էր. այսօր հա-
զիվ թե այն ընդունելի լինի։ Կյանքը շարժման մեջ է։ Փոխվել են աշխատանքի

բնույթը, սովորույթները, ընդլայնվել մասնագիտությունների շրջանակները։ Այս առնչությամբ անհրաժեշտ է ճկունացնել աշխատանքի վարձատրման կարգը։ Մասնագիտական տարբերությունների դինամիկան կարիք ունի մանրազնին ու համակողմանի հաշվառման, ընդ որում նաև սոցիալական արդարության պահանջների առումով։

Նյութական բարիքների արտադրության ձեռք բերված մակարդակը, կազմավորված ու կատարելագործվող սոցիալական կապերի համակարգը հիմք են ծառայում որոշումներ ընդունելու բաշխման բնույթի վերաբերյալ։ Հանրօգուտ աշխատանքում մարդկանց հնարավորությունների դրսևորման օբյեկտիվ պահանջը անհրաժեշտ նախադրյալ է ըստ աշխատանքի բաշխման համար։ ՍՄԿԿ XXVI համագումարը հատկապես շեշտեց, որ նյութական ու բարոյական խթանման համակարգը պետք է մշտապես ու ամենուր ապահովի յուրաքանչյուրի աշխատանքային ներդրման արդարացի ու օբյեկտիվ գնահատականը։

Այստեղ բնականաբար անհրաժեշտ է պարզաբանել մի շատ հուզող հարց. դա հավասարության ու անհավասարության դիալեկտիկայի մշտահույզ պրոբլեմն է։ Հին աշխարհի ներկայիս պաշտպանները ճգնում են ապացուցել, իբր անհավասարությունը ազատության անհրաժեշտ նախադրյալ է, թե միայն անհավասարությունն է ի վիճակի սնուցել կուլտուրան, թե հավերժ ու անկասելի է մարդկանց սոցիալական ստորաբաժանումը։ «Աշխարհի ուժեղների» մարդկային արժանապատվությունը ոտնահարող գռեհիկ արտահայտություններին հակադրվելու անմիջական արձագանքն էր «համահարթման կոմունիզմի» գաղափարը, որ ժամանակին քննադատել են մարքսիզմի հիմնադիրները։

Գիտական կոմունիզմի տեսությունն ու պրակտիկան անհարիր են նման հակագիտական մտայնություններին։ Սոցիալիզմի պայմաններում ոչ մի սոցիալական խավ չի կարող աշխատավոր զանգվածներից վեր կանգնած լինել։ Մեր իրոք դեմոկրատական հասարակությունում ոչ մի բան՝ ո՛չ զբաղեցրած ծառայական պոստը, ո՛չ կրթության մակարդակը, ո՛չ կատարվող հասարակական ֆունկցիաների կարևորությունը ոչ մի անձի, ոչ մի սոցիալական խմբի հիմք չեն տալիս հավակնելու բացառիկ, արտոնյալ դրության։ Իրենց սահմանադրական պարտականությունների ու իրավունքների կատարման գործում մեզ մոտ բոլոր մարդիկ հավասար են։ Բայց և այնպես այդ հավասարությունը չպետք է շփոթել համահարթման հետ։

Մարքս-լենինյան տեսությունը հավասարության պրոբլեմը լուծում է՝ կապված դասակարգային տարբերությունների վերացման պատմական խնդրի հետ։ Այստեղ անհրաժեշտ են նաև տնտեսական ու սոցիալական այնպիսի պայմաններ, որոնց առկայությունը բոլոր մարդկանց հավասար հնարավորություն կընձեռի օգտվելու կենսական բարիքներից, բանելու գործունեության ցանկացած ոլորտում։

Արդի պայմաններում հասարակության ու անհատի հարաբերությունների արդարացիության չափանիշը աշխատանքն է։ Յուրաքանչյուրին ըստ աշխատանքի՝ հաշվի առնելով վերջինիս արդյունքները, պայմաններն ու ինտենսիվությունը։ Նման մոտեցումը բաշխման մեջ պահանջում է պահպանել անհավասարության տարրեր։ Մեր հասարակարգին օտարածին են աշխատանքի արդյունքների հետ չառնչվող արտոնությունները։ Բայց լիովին մերժել գերադասությունը, ճիշտ չէ։ Դեռևս Լենինն է նկատել. «Գերադասությունը հարվածայնության մեջ գերադասություն է նաև սպառման մեջ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 42, էջ 263)։

Լայն զանգվածների շրջանում հաճախ հուզական պոռթկման տեղիք է տալիս բաշխման ոլորտում կիրառվող նախապատվությունների պրակտիկան։ Բայց չէ՞ որ ողջամտությունն ընդունելի է համարում այդ իրողության արդարացիությունը։ Այնուհանդերձ, հենց այստեղ ավելի, քան որևէ տեղ, անհրաժեշտ է չափի զգացում, նրբանկատություն։ Սոցիալիստական հասարակությունն օժտված է մարդկանց շահագրգռությունների հաշվառման հուսալի մեթոդով։ Սպառման հասարակական ֆոնդերի միջոցով զգալիորեն «հավասարվում է» անձնավորությունների պահանջմունքների բավարարումը։ Հասարա-



կական հարստության արդարացի բաշխումն ապահովելու սոցիալական լծակներ են հաստիքային դրույքները, տարիֆային կապալը, պարգևատրումները, աշխատանքի պայմաններով, աշխատանքային հաջողության աստիճանով պայմանավորված արտոնություններն ու առավելությունները, պարգևատրություններն ու կոչումները։

Չնայած այս ասպարեզում ձեռքբերումներն ակներև են, այնուամենայնիվ, տակավին կան չլուծված ու չկարգավորված հարցեր։ Օրինակ, պարգևատրման համակարգը նյութական արտադրության ոլորտում հիմնականում նախատեսվում է իբրև լավագույններին խրախուսելու արդարացի միջոց, սակայն շատ դեպքերում դառնում է չմտածված համահարթման ձև։ Աշխատավարձի համակարգի կողմնորոշումը դեպի վերջնական արդյունք, հաճախ մնում է իբրև չիրականացված մտահղացում։ Հարկ է նկատել, որ բաշխման բարդ ու հակասական մեխանիզմում կարող են լինել խաթարումներ, անհամամասնություններ, շեղումներ այս կամ այն անհատի, արտադրամասի աշխատանքի գնահատման արդարացի չափից։ Սոցիալական օրգանիզմը գերբարդ, հարափոփոխ համակարգ է, որտեղ դժվար նշմարվող փոփոխությունները հարկ է քննարկել արդարության ապահովման կոնկրետ ձևերում։

Մեր հասարակության կյանքում սոցիալական արդարությունն այսօր հնարավորին չափով գործնականորեն իրականացնելու համար բավական չէ հիմնըվել նրա օբյեկտիվ սկզբունքների վրա։ Դրանք իրականում պետք է դառնան ամեն մի մարդու արարքները կարգավորող գործոն։ Սակայն դա անհնար է առանց արդարության զգացումի նպատակասլաց ձևավորման, դրա էության ըմբռնման։ Այստեղ, իհարկե, սխալ է այդ պրոցեսի տարերային մշակում հուսալ։ Արդարության հիմքերի հիմքը հասարակական ու անձնական շահագրգռությունների լավագույն փոխհարաբերակցումն է։ Դա հույժ անհրաժեշտ է և՛ այսօր, և՛ վաղը։ Լենինը, անդրադառնալով կոմունիստական հասարակության մարդկանց, մասնավորապես խորաթափանցորեն նկատել է, որ նրանք «անհնարինը չեն պահանջի»։

Հիրավի, ելնելով կոմունիստական արդարության սկզբունքներից՝ անհրաժեշտ են խելամիտ պահանջմունքներ— բանականությամբ վերահսկվող, գիտակցաբար գնահատվող, առկա հնարավորությունների սթափ ու կշռադատված պահանջմունքներ։ Այստեղ կարևոր է ռեալ իրադրության ողջամիտ, կանխամտածված կարծիքներից ու ցանկություններից զերծ հաշվառումը։ Արդարության հաստատումը արդի պայմաններում մեծապես ամրակայվում է խելամիտ պահանջմունքների նպատակային ձևավորման, սպառման կուլտուրայի դաստիարակության միջոցով։ Հասարակությունը չի կարող չափանիշ ընտրել քմահաճությունն ու կամայականությունը։ Լայն զանգվածների նյութական բարեկեցության անշեղ աճը նոր աշխարհի պատմական առաքելությունն է։ Հանրահայտ է, որ հասարակական կյանքում երևույթներն ունեն իրենց հետադարձ կողմը։ Որոշ մարդկանց մոտ դա ստեղծում է պատրանքային պատկերացում ցանկացած բարիքը հեշտ ձեռք բերելու մասին, ծնում է վատնելու, անհոգության տրամադրություն, բթացնում սոցիալիզմի պայմաններում այնքան կարևոր խնայողության ու տնտեսման կենսադիրքորոշումը։ Հետևա՞նքը— անճաշակություն, ընչաքաղցություն, գերսպառման զգացում, իրապաշտություն, մեր ապրելակերպին խորթ արժութային կողմնորոշումների տարածում։ Երբեմն դրան նպաստում է նաև մասսայական ինֆորմացիայի միջոցների լայն տարածումը։ Հատկապես, երբ այս կամ այն ալիքով մեզ մոտ սողոսկում են արևմտյան «մասսայական կուլտուրայի» նմուշներ՝ քաղքենիական տարրերի դրոշմով, հագեցած բուրժուական գաղափարախոսությամբ։ Եվ, արդարև, որտեղ առողջ պահանջմունքների փոխարեն երևան են գալիս շորթելու մղումներ, այնտեղ ակնբախորեն խեղաթյուրվում է պատկերացումը արդարության մասին։

Հասկանալի է, որ այդ կարգի երևույթների առաջացումը որոշ չափով պայմանավորվում է մի շարք օբյեկտիվ պատճառներով։ Արդի հասարակական արտադրության բազմաստիճան, գերբարդ կոմպլեքսն այնպիսին է, որ անմիջական աշխատողը ոչ միշտ է ռեալ պատկերացնում հասարակության

հնարավորությունները սեփական ներդրումի և մարդկային պահանջմունքների ողջ միագումարի բավարարման վերաբերյալ։ Այստեղից և հնարավոր է դառնում սեփական ներդրումի ու հասարակությունից ստացվող անձնական ֆոնդի հարաբերակցման խեղաթյուրումը։ Հասարակական հարստության անսահմանության ապավինելը լուրջ մոլորություն է, որը ծնում է անհագուրդ ախորժակ։ Անշուշտ, մարդկային են հաճույքներն ու բավականությունը, տոնախնդություններն ու խրախճանքը, առանց դրանց կյանքը կկորցներ իր շատ հրապույրները։ Բայց և այնպես այդ առթիվ լավ է ասում ժողովրդական իմաստությունը՝ գործին ժամանակ, ուրախությանը՝ ժամ։

Այժմ, ավելի քան երբեք, անհրաժեշտ է, որպեսզի բոլորի համար պարզ ու հստակ լինի, որ անմիջական կապ կա անձնական աշխատանքային ներդրման ու ստացվելիք կենսական բարիքների միջև։ Կրթության համակարգը պետք է ավելի նպատակաուղղված լինի ուսուցման պրոցեսը սերտորեն առնչելու նյութական ու հոգևոր արտադրության հետ։ Կյանքը մերժում է մեծահասակային ինֆանտիլիզմը, ինչպես և անչափ ձգվող սոցիալական հասունացումը։ Աշխատանքային կոլեկտիվներում պետք է ավելի հստակ ու առարկայական դրվի աշխատանքի հասարակական նշանակության իմաստավորման պրոբլեմը։ Հարկավոր է ակնբախորեն ու հիմնավորված պատկերացնել սեփական աշխատանքի, բրիգադի, արտադրամասի, գործարանի, հիմնարկության, ճյուղի տեղը մեր հսկայական սոցիալական օրգանիզմում։ Դա սոցիալական արդարության, նրա գումարելիների ու ձևերի ըմբռնման առանցքն է։

Հիմնականը, էականը կյանքում արարման գործունեությունն է։ Մարդու ինքնադրսևորման վճռական ոլորտը աշխատանքն է՝ նրա արժանապատվության ու հեղինակության գործակիցը, սոցիալիստական աշխարհի սոցիալական արդարության անվերապահ հաստատումը։ Այսօր առավել հրատապ է հնչում լենինյան դրույթը սոցիալիզմի պայմաններում աշխատանքի ու սպառման չափի վրա խստագույն վերահսկողություն սահմանելու մասին։ Նման վերահսկման կատարելագործման նպատակամղեցին կուսակցության XXVI համագումարը, ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումները։ Այնտեղ, ուր այդ վերահսկողությունը թուլանում է, գլուխ են բարձրացնում նրանք, ովքեր քամահրում են սոցիալիստական ապրելակերպի սկզբունքներն ու իդեալները։ Շորթողներն ու չարաշահորդները, հասարակական բարիքի հափշտակողները, մեր բարոյականության ոտնահարողները հանդես են գալիս իբրև նողկալի անարդարության գործիք, հին աշխարհի չարագույժ ստվերներ։ Սոցիալիստական գիտակցության արդարացիությունը պահանջում է արմատախիլ անել այդ կործանարար երևույթները։

Սովետական հասարակության կյանքում հաստատվել է բարոյական առողջ մթնոլորտ։ Այդ անուրանալի իրողություն է։ Այդուհանդերձ, բարոյական գիտակցության ոլորտում կան մտահոգիչ շատ հանգամանքներ։ Այսօր հատկապես աններելի է «գիտակցականության» ետ մնալը «գիտելիքներից»։ Բնակչության առանձին շրջաններում աչքի են զարնում բարոյական աղքատության ու գռեհկության դրսևորումները, որոնք իրենց դրոշմն են թողել նաև արդարության ըմբռնման վրա։ Այս բացասական երևույթների դեմ մղվող պայքարում մեզ խանգարում է մի այնպիսի բարոյական արատ, ինչպիսին անսկզբունքայնությունն է, որը, ցավոք, ներթափանցում է մեր ապրելակերպում։ Անսկզբունքայնությունը, հակադրվելով կոմունիստական սկզբունքայնությանը, պատճառ է դառնում անարդարության, անհրաժեշտ պահին ամեն ինչ ներելու, բարոյական զայրույթը մեղմելու տրամադրության, աջակցում է անտարբերությանը, սնուցում հաշտվողականություն և այլն։ Արդի պայմաններում պատերազմ հայտարարելով անսկզբունքայնությանը, նշանակում է շղթայում գտնել այն օղակը, որից բռնելով մենք կկարողանանք վճռաբար բարձրացնել մարդկանց բարոյական կերպարը ձևավորող ողջ համակարգը, պաշտպանել արդարությունը, ամրապնդել մարդու հավատը արդարադատության նկատմամբ։ Ցավոք, երբեմն այդ հանգամանքին ոչ միշտ է պատշաճ ուշադրություն նվիրվում մարդկանց գնահատման, կադրային հարցերի լուծման ժամանակ։



Սոցիալական արդարությունը մշտապես տրված հասկացություն չէ։ Ինչպես ասվեց, ամեն մի դարաշրջանում այն լրացվում է իր տնտեսական, սոցիալական, դասակարգային-քաղաքական բովանդակությամբ, սերտորեն առնչվում հասարակության զարգացման մակարդակի հետ։ Այսօր սոցիալական արդարություն հասկացության բովանդակությունը բնավ չի հանգեցվում միայն իրավունքների ու ազատությունների ապահովման։ Հասուն սոցիալիզմի պայմաններում կյանքի բոլոր ոլորտներում կոլեկտիվիստական հիմքերի հետևողական ծավալմամբ, սոցիալական արդարության հասկացությունն ու սկզբունքները օրինաչափորեն ընդգրկում են մարդկային լինելության ողջ միագումարը, հասարակության ու անհատի փոխհարաբերությունների բոլոր կողմերը։ Սոցիալիզմը անհրաժեշտ, պատմականորեն տևական փուլ է, լիակատար սոցիալական հավասարության, հետևաբար և սոցիալական արդարության հասնելու ճանապարհին։ Վերացնելով արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը, քաղաքի ու գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև էական տարբերությունները, այսինքն՝ ապահովելով սոցիալական արդարությունը գլխավորում, հիմնականում, նոր հասարակությունը, ինչպես Վ. Ի. Լենինն էր ասում, ի վիճակի չէ միանգամից ոչնչացնել նաև հետագա անարդարությունը, երբ սպառման առարկաները բաշխվում են «ըստ աշխատանքի» և ոչ թե «ըստ պահանջմունքների» (ԵԼԺ, հ. 33, էջ 119)։

Տակավին վաղ անցյալում արդարություն հասկացությունը ներառնում էր ո՛չ միայն մարդկանց միջև բարիքների ճշմարիտ բաշխումը, հասարակության չափերին համապատասխան, այլև սոցիալական ու քաղաքական իրավունքներից հավասար չափով օգտվելու հնարավորությունը։

Դարեր ի վեր բուրժուական իրավագիտության համար արդարությունը մարմնավորում էր օրենքի առջև հավասարության իդեալը։ Սակայն պատմության փորձն ակնհայտորեն ցույց է տալիս դրա անհամապատասխանությունը իրականությանը։ Ձևականորեն հռչակված օրենքի առջև հավասարությունը իրականում արտոնություններով օժտեց փոքրամասնությանը, անարդարություն դրսևորելով շահագործվող մեծամասնության նկատմամբ։

Սոցիալիզմն ապահովեց յուրաքանչյուր քաղաքացու իրավունքների սոցիալ-տնտեսական հիմքը, ռեալ պայմաններ ստեղծեց քաղաքական ոլորտում արդարության սկզբունքների իրականացման համար։

Անշուշտ, ճիշտ չի լինի սոցիալական արդարությունը պատկերացնել սոսկ որպես հեռավոր ապագայի իրողություն, որը, իբր, նշանակալի դեր չի խաղում արդի սոցիալիստական հասարակության կյանքում։ Ընդհակառակն, այսօր արդարություն հասկացությունը, այդ մեկնակետից քաղաքական, սոցիալական, տնտեսական ամեն մի երևույթի գնահատումը կենսական է ու հրատապ յուրաքանչյուր անհատի համար։ Չէ որ անարդարության ամեն մի դրսևորում, որտեղ էլ այն տեղի ունենա, հարուցում է աշխատավորների բնական բողոքը, վիրավորում նրանց արժանապատվությունը։ Նման իրողությունը մասնավորապես հանգեցնում է ազնիվ, բարեխիղճ աշխատանքի հեղինակության անկման, առանձին դեպքերում՝ մարդկանց հասարակական ակտիվության նվազեցման։ Ուստի սոցիալիստական արդարության սկզբունքներին հակասում են ինչպես համահարթման մոտեցումը, նույնպես և սպառման ոլորտում սոցիալականորեն չարդարացվող տարբերությունները։

Սոցիալիզմը, հասարակական կյանքում առաջ մղելով մարդուն իր հարաճուն հոգևոր-բարոյական պահանջմունքներով, հասուն էտապում ձեռք բերեց սոցիալական արդարության բազում պրոբլեմների լուծման նոր հնարավորություններ։ Այժմ ամեն մի կառավարչական լուծում պետք է դիտվի ո՛չ միայն տնտեսական, այլև դրա սոցիալական արդյունավետության տեսանկյունից։

Հասուն սոցիալիզմի պայմաններում առավել հստակ է արտացոլվում սոցիալական արդարության տնտեսական, սոցիալ-քաղաքական, բարոյական ուժը, որը սոցիալիստական հասարակության զարգացման ու կատարելագործման կարևոր խթան է։ Այժմ սոցիալական արդարությունը մեզ մոտ առաջին

հերթին դրսևորվում է ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի հետևողական կիրառման մեջ, դրա ռեալ արդյունքներում։ Սակայն ճիշտ չէր լինի ըստ աշխատանքի բաշխման սկզբունքը համարել մտացածին «արդարության կանոն»։ Այստեղ խոսքը վերաբերում է օբյեկտիվ տնտեսական օրենքին, որը կարգավորում է սոցիալիզմի արտադրահարաբերությունները։ Տվյալ դեպքում տընտեսական անհրաժեշտությունը կարծես բեկվում է արդարության միջոցով, ձեռք բերում բարոյական որակ։ Ահա թե ինչու դրա խախտումը ծայրահեղորեն վնասակար է ազդում ո՛չ միայն արտադրական ցուցանիշների, այլև կոլեկտիվի բարոյական մթնոլորտի, աշխատողների հոգեբանական վիճակի վրա։

Բաշխման ոլորտում բացասական երևույթների դեմ պայքարի ընդհանուր միջոցներ չկան։ Միայն տնտեսական, կազմակերպական ու իրավական բնույթի կոմպլեքս միջոցառումները, զուգակցված գաղափարադաստիարակչական ջանքերին, կարող են ապահովել խստագույն վերահսկողություն աշխատանքի ու սպառման չափի վրա։ Այս առնչությամբ հրատապ է մնում նորմավորման կատարելագործման վերահսկման տարբեր ձևերի զարգացման ապահովումը, որը բնորոշ է միասնական կապալով աշխատող բրիգադներին։ Դա կարևոր երևույթ է ո՛չ միայն արտադրական, տնտեսական, այլև բարոյական առումով։ Ահա թե ինչու այնպես կարևոր է վարձատրման կարգի պատշաճ կատարելագործումն այս ասպարեզում։ Այստեղ իբրև բաշխման հիմք հանդես է գալիս ոչ թե մեկուսացված, ինքնամփոփ աշխատողների աշխատանքը, այլ միացյալ, կոլեկտիվ վերջնական արդյունքը, որտեղ հաշվի է առնվում նաև յուրաքանչյուրի կոնկրետ ներդրումը։ Բրիգադում տեղի ունի անհատի շահերը կոլեկտիվի ու հասարակության հետ առավել արդյունավետ միավորելու ձևերի որոնում։ Ընտրողների հետ ունեցած հանդիպման ժամանակ ընկեր Կ. Ու. Չեռնենկոն ասաց. «Մեր գլխավոր հոգսերից մեկը պետք է լինի այն, որ միշտ և ամենուրեք կենսագործվի ըստ աշխատանքի բաշխման սոցիալիստական սկզբունքը։ Ով աշխատում է ուժերի լիակատար նվիրումով, պետք է վաստակի հարցում անպայման առավելություն ունենա։ Կարող են ասել. չէ՞ որ մենք հիմա էլ կարողանում ենք անփույթ աշխատողներին պատժել ռուբլով, իսկ բարեխիղճներին պարգևավճարներ ենք տալիս։ Դա իրոք այդպես է։ Բայց պատիժների մեջ մինչև հիմա ըստ երևույթին պակասում է խստությունը, իսկ նյութական խրախուսանքի մեջ՝ հարկ եղած արդարությունը, իսկ երբեմն էլ, եթե ուզում եք, նաև առատաձեռնությունը։ Այս հարցով պետք է զբաղվել հիմնավորապես և դարձյալ առանց հապաղելու»։

Բազում սերունդներ դարեր շարունակ երազել են ապրել մի այնպիսի հասարակությունում, որը հիմնված լինի սոցիալական արդարության սկզբունքների վրա։ Հիրավի, այն իրողություն դարձավ սոցիալիզմի աշխարհում։ Հասուն սոցիալիզմի պայմաններում, ակներևաբար, բացահայտվում է սոցիալական արդարության բազմակողմանի, համապարփակ բնույթը, որը, ըստ էության, դրսևորվում է հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։

---

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐԻ ԴԱՍԱԿԱՐԳՄԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

**Բ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՀԱՆՐԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՈՒՄԸ և արդյունավետության անշեղ բարձրացումը կարևորագույն ժողովրդատնտեսական խնդիր է, այն մշտապես գտնվում է կուսակցության ու կառավարության ուշադրության կենտրոնում։ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. դեկտեմբերյան պլենումի որոշման մեջ ասված է, որ անհրաժեշտ է առավել ակտիվորեն զարգացնել արդյունավետության աճի դրական միտումները, դրանց հաղորդել կայուն բնույթ։ Այդ խնդրի հաջող իրագործումը պահանջում է նաև ճշտորեն գնահատել արդյունավետության մակարդակը, որի համար օգտագործվող առավել նպատակահարմար ցուցանիշների համակարգի ստեղծման ու գործնական կիրառության ասպարեզում դեռևս բարդություններ կան։ Տնտեսագիտության կարևորագույն ուղղությունների շարքում «Հասուն սոցիալիզմի տնտեսական տեսության հանգուցային հարցերի մշակման գործում ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի տնտեսագիտության ինստիտուտի դերը բարձրացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. փետրվարի 24-ի որոշման մեջ նշվում է, որ անհրաժեշտ է հաղթահարել արտադրության արդյունավետության չափանիշների ու ցուցանիշների համակարգի ստեղծման նպատակով հետազոտությունների ետ մնալը։ Բանն այն է, որ արդյունավետության ցուցանիշների համակարգը շատ ծավալուն է, նրանում ցուցանիշների քանակը հասնում է հարյուրների, նույնիսկ հազարների։ Դա, ինչ խոսք, դժվարացնում է արդյունավետության ստույգ գնահատումը։ Հարցը միայն աշխատանքային հսկայական ծախսումները, ժամանակի կորուստը կամ հաճախ անհրաժեշտ ինֆորմացիայի բացակայությունը չէ։ Մեկ տարբերակից մյուսին անցնելիս որոշ ցուցանիշներ երբեմն փոփոխվում են տարբեր ուղղությամբ։ Այսպես, աշխատանքի արտադրողականության աճը մեծ մասամբ ձեռք է բերվում ֆոնդազինվածության մեծացման ու ֆոնդահատույցի նվազման հաշվին։ Դա հնարավորություն չի ընձեռում հիմնավոր եզրակացության հանգելու ուսումնասիրվող տարբերակի տնտեսական բնութագրերի մասին։ Այս պայմաններում անհրաժեշտություն է դառնում արդյունավետության ցուցանիշների համակարգի գործնական օգտագործման հարցերի բազմակողմանի մշակումը։ Այս նպատակով նախ անհրաժեշտ է համակարգի ցուցանիշները դասակարգել ըստ հատկանիշների և դրանով իսկ որոշակի դարձնել դրանց օգտագործման սահմանները և հնարավորություն տալ նախագծողին կամ պլանավորողին՝ յուրաքանչյուր դեպքում ընտրելու և օգտագործելու համապատասխան ցուցանիշներ։

Կարևոր խնդիր է համակարգում և դրա առանձին ենթահամակարգերում ցուցանիշների նպատակահարմար կազմի ու թվաքանակի սահմանումը։ Մի կողմից պահանջվում է ճիշտ և բազմակողմանի գնահատել միջոցառման արդյունավետությունը, այսինքն օգտագործել շատ ցուցանիշներ, կատարել մեծ ծա-

վալի հաշվային աշխատանք, մյուս կողմից տնտեսապես նպատակահարմար է գնահատումը կատարել հնարավոր փոքր ծախսումներով։ Այստեղից բխում է հետևյալ խնդիրը. մշակել արդյունավետության ցուցանիշների այնպիսի կազմ ու քանակ, որն ապահովի այս հակամետ պահանջների կոմպրոմիսային բավարարում, այսինքն՝ արդյունավետությունը գնահատվի գործնականորեն ընդունելի ճշտությամբ և հնարավոր փոքր ծախսումներով։ Այս խնդիրը լուծված չէ և յուրաքանչյուր կոնկրետ դեպքում հարկ է լինում անսալ փորձագետի հանձնարարականին։

Արդյունավետության ցուցանիշների թվի կրճատման նպատակով կարևոր է դրանց փոխադարձ կապերի բացահայտումը։ Եթե որևէ ցուցանիշ կարելի է արտահայտել մյուսների միջոցով, ապա դրա կիրառումը փաստորեն նոր օգտակար ինֆորմացիա չի տալիս և այն կարելի է հանել համակարգի հիմնական ցուցանիշների կազմից, վերջինում թողնելով միայն առաջնային, կարևոր ցուցանիշներ։ Այդպիսի ուսումնասիրության ընթացքում կարելի է ցուցանիշները՝ դրանց թվի կրճատման նպատակով, կարգավորել ըստ գերադասելիության աստիճանի, այսինքն որոշել, թե որևէ միջոցառման արդյունավետությունը գնահատելիս եղած ցուցանիշներից որի՞ միջոցով ստացված գնահատականը կարելի է ընդունվող որոշման հիմքում դնել։

Համակարգում ցուցանիշների թվաքանակի կրճատման կարևոր ուղի է ընդհանրացնող ցուցանիշների կազմումը, որոնք իրենց մեջ միաժամանակ ընդգրկում են ծախսումների կամ արդյունքի մի քանի տեսակներ, այսինքն արդյունավետության մի քանի կողմերը միացյալ արտահայտում են մեկ ցուցանիշում։ Այդպիսի ընդհանրացնող ցուցանիշ է, օրինակ, շահութաբերությունը, որում միաժամանակ հաշվի են առնվում հիմնական ու շրջանառու ֆոնդերը, արտադրական ընթացիկ ծախսումները, արտադրանքի ծավալն ու որակը (գնի միջոցով)։ Եթե հաջողվի կազմել մի այնպիսի ցուցանիշ, որում իրենց արտահայտությունը գտնեն տվյալ միջոցառման բոլոր ծախսումներն ու ստացվող արդյունքները, ապա արդյունավետության մակարդակը գնահատելու համար լիովին կարելի է բավարարվել միայն այդ մեկ ցուցանիշով, որը իրավամբ կարելի է անվանել արդյունավետության չափանիշ։

Ցուցանիշների թվի հիմնավոր կրճատման ու տեղին օգտագործման նպատակով, ինչպես նշեցինք, կարևոր է դրանց ճիշտ դասակարգումը։ Մասնագիտական գրականությունում առաջարկված են այդպիսի մի շարք դասակարգումներ։ Նպատակ չունենալով վերլուծել դրանք առանձին-առանձին, նշենք, որ ցուցանիշների ցանկացած բնութագիր կարող է դառնալ դասակարգման հատկանիշ։ Խնդիրը միայն այդ հատկանիշների ընտրությունը, ձևակերպումն ու օգտագործումն է։ Ստորև մեր առաջարկած դասակարգման մեջ գրականությունում հայտնի հատկանիշներից բացի օգտագործված են մի շարք նորերը, իսկ արդեն եղած որոշ հատկանիշներ ստացել են նոր բացատրություն։ Դասակարգմանը զուգընթաց միաժամանակ փորձ է արվում գնահատել առանձին ցուցանիշների կամ դրանց խմբերի գերադասելիությունը մյուսների նկատմամբ։

Ցանկացած դասակարգման հիմնավորվածությունն առաջին հերթին պայմանավորված է վերլուծվող մեծությունների ճիշտ բնորոշմամբ։ Կանգ չառնելով արդյունավետության՝ գրականությունում հանդիպող տարբեր բնորոշումների համեմատական վերլուծության վրա, առավել ընդունելի ենք համարում հետևյալ բնորոշումը. ծախսումների արդյունավետությունն ընդհանուր դեպքում այդ ծախսումների և դրանց օգնությամբ ստացվող (մեկ կամ բազմակի անգամ, ռեական ժամանակի ընթացքում) արդյունքի համադրումն է հարաբերության տեսքով։ Այն կարող է արտահայտվել որպես արդյունքի հարաբերություն ծախսումներին կամ ծախսումների հարաբերություն արդյունքին։ Առաջինը տեսակարար արդյունքն է, իսկ երկրորդը՝ տեսակարար ծախսումները։ Արդյունավետությունը գնահատելու տեսանկյունից այս ցուցանիշները, ինչպես օրինակ, աշխատանքի արտադրողականությունն ու արտադրանքի աշխատատարությունը, ֆոնդահատույցն ու ֆոնդատարությունը, լիովին համար-



ժեք են և կարող են հավասարապես օգտագործվել և իրար փոխարինել։ Պայմանականորեն դրանք անվանենք արդյունավետության ուղիղ և հակադարձ ցուցանիշներ։ Ելնելով դրանց տնտեսագիտական բովանդակությունից, ավելի նպատակահարմար ենք համարում առաջինի՝ արդյունավետության ուղիղ ցուցանիշի ավելի լայն օգտագործումը։ Այն արտահայտում է միավոր ծախսումների հաշվով ստացվող արդյունքի չափը, հաճախ կոչվում է արդյունավետության գործակից։

Ըստ արդյունքի կրկնելիության կարելի է զանազանել միանվագ և բազմակի (անընդհատ) արդյունավետության ցուցանիշներ։ Առաջինն արտահայտում է այն ծախսումների արդյունավետությունը, որոնք ապահովում են արդյունքի ստացումը միայն մեկ անգամ և կրկին արդյունք ստանալու համար հարկավոր են նոր ծախսումներ։ Այսպիսիք են, օրինակ, տարեկան ընթացիկ ծախսումների արդյունավետության ցուցանիշները (տարեկան ծախսերի միավորի հաշվով ստացվող արտադրանքը)։ Երկրորդ խմբի ցուցանիշներում որպես ծախսումներ դիտվում են արտադրառեսուրսները, օրինակ, հիմնական արտադրաֆոնդերը, որոնք արդյունք են ապահովում ամեն տարի, իրենց ծառայության ողջ ժամանակամիջոցում։ Դրանք ընդունված է անվանել ռեսուրսային արդյունավետության ցուցանիշներ, ինչպես օրինակ, աշխատանքի արտադրողականությունը կամ ֆոնդահատույցը, սակայն հիմնականն այստեղ ոչ թե ծախսումների տեսակն է, այլ արդյունքի ստացման կրկնելիությունը և այդպիսի անվանումը ոչ լրիվ է բացահայտում ցուցանիշների տնտեսագիտական էությունը։ Օրինակ, եթե ռեսուրսների (դիցուք հիմնական ֆոնդերի) հետ համադրենք դրանց շահագործման ողջ ժամանակաշրջանի ընթացքում ստացվող գումարային արդյունքը, ապա այդպիսի հարաբերությունը, որը գրականությունում հայտնի է որպես ինտեգրալային արդյունավետության ցուցանիշ, կբնութագրի արդեն միանվագ արդյունավետությունը։ Եթե դրանում հաշվի առնենք նաև ռեսուրսների վերականգնման ծախսումները, ապա այն կտա գործնականորեն չսահմանափակվող ժամանակի յուրաքանչյուր տարում կրկնվող արդյունավետությունը։ Ուստի առաջարկվող «անընդհատ արդյունավետության ցուցանիշ» տերմինն ավելի հարմար է։ Կարծում ենք, այդպիսի ցուցանիշը առավել լրիվ է արտահայտում ծախսումների ու արդյունքի համադրումը և, միանվագ արդյունավետության ցուցանիշի հետ համեմատած, գերադասելի է, քանի որ ավելի ճիշտ է բացահայտում արդյունավետության բովանդակությունը։ Այն կարելի է համարել արդյունավետության մակարդակը գնահատելու և տարբերակները համեմատելու հիմնական ցուցանիշ։

Ըստ ծախսումների ու դրանց արդյունքի ընդգրկման ու միջինացման աստիճանի տարբերվում են միջին և աճի արդյունավետության ցուցանիշներ։ Առաջինում օգտագործված են ծախսումների լրիվ ծավալը և գումարային արդյունքը, իսկ երկրորդում՝ այդ ծախսումների ցանկացած մասը և համապատասխան արդյունքը։ Դրանք տարբեր ֆունկցիաներ ունեն և չեն փոխարինում միմյանց։ Սակայն անհրաժեշտ է նշել աճի արդյունավետության ցուցանիշների ավելի լայն կիրառությունը և կարևորությունը արդյունավետության շարժը գնահատելու, ինչպես նաև որևէ միջոցառմանն ուղղվող ծախսումների սահմանային մեծությունը որոշելու համար։ Այդպիսի ցուցանիշները մեծ մասամբ օգտագործվում են տարեկան ծախսումների կամ ռեսուրսների տարեկան աճի համար։

Գործնականում լայն կիրառություն է ստացել ցուցանիշների տարբերումը ըստ բացարձակ ու համեմատական արդյունավետության։ Առաջինում համադրվում են միջոցառման ծախսումների ու արդյունքի բացարձակ մեծությունները, դրանով գնահատվում է այդ ծախսումների արդյունավետության մակարդակը։ Երկրորդ խմբի ցուցանիշներում համադրվում են երկու համեմատվող տարբերակների ծախսումների և համապատասխան արդյունքների տարբերությունները։ Դա նշանակում է, որ բացարձակ արդյունավետության յուրաքանչյուր ցուցանիշին համապատասխանում է համեմատական արդյունավետության որոշակի ցուցանիշ։ Նշենք, որ տնտեսագիտական գրականության

մեջ համեմատական արդյունավետության ցուցանիշը այս ձևով չի բնութա-
գրվում։ Ընդունվում է դրա մեկ կոնկրետ ձևը՝ որպես երկու տարբերակներում
ինքնարժեքների տարբերության և պահանջվող կապիտալ ներդրումների տար-
բերության հարաբերություն (հակադարձը կոչվում է ետգնման ժամանակա-
միջոց), որը շատ մասնավոր դեպք է։ Համեմատական արդյունավետության
ցուցանիշը գործնական հաշվարկներում օգտագործվում է միջոցառումների
նպատակահարմար տարբերակն ընտրելու համար։ Սակայն, քանի որ այդ
նպատակով ավելի լավ է ծառայում բերված ծախքերի ցուցանիշը, ուստի դրա
օգտագործման համար խիստ սահմանափակ ոլորտ է մնում (բերված ծախքե-
րը, չնայած գրականությունում հանդիպող կարծիքին, համեմատական արդյու-
նավետության ցուցանիշ չէ, այլ վերջինիս ու արդյունավետության նորմատիվի
համեմատության հետևանքով ստացված նոր արտահայտություն, բոլորովին
այլ տնտեսագիտական բովանդակությամբ)։ Այստեղից հետևում է, որ տեսա-
կան ու գործնական առավել կարևորություն ունեն բացարձակ արդյունավետու-
թյան ցուցանիշները, որոնք և լայնորեն կիրառվում են արտադրության ար-
դյունավետությունը գնահատելիս (օրինակ, շահութաբերություն)։ Ցուցանիշ-
ներում կարելի է օգտագործել տվյալ ծախսումների անմիջական կամ այլ
պրոցեսներով միջնորդված արդյունքը։ Օրինակ, գիտական հետազոտու-
թյունների անմիջական արդյունքը նոր գիտելիքներն են, որոնք մշակումների
միջոցով կարող են մարմնավորվել նոր տեխնիկայի նմուշում։ Վերջինիս մաս-
սայական արտադրությունը ստեղծում է ռեսուրս ներդրման համար, որի օգ-
տագործումն ապահովում է վերջնական արդյունք։ Հետևապես ըստ դիտարկվող
արդյունքի, կարելի է զանազանել անմիջական, միջնորդված և վերջնական ար-
դյունավետության ցուցանիշները։ Երբ տվյալ միջոցառման համար հաջորդող
պրոցեսներ չկան, ծախսումներն անմիջապես հանգեցնում են վերջնական ար-
դյունքի և բնորոշվում են արդյունավետության մեկ ցուցանիշով։ Մնացած
դեպքերում ցուցանիշի անվանման մեջ պետք է նշել, թե դրանցից որով է այն
հաշվարկվում, հակառակ դեպքում արդյունավետության գնահատականն անո-
րոշության տարր կունենա։ Առավել հետաքրքրական է վերջնական արդյունքը,
ուստի գործնականում ավելի շատ օգտագործվում են վերջնական արդյունավե-
տության ցուցանիշներ, սակայն առանց հաջորդ պրոցեսների ծախսումները
դրանցում հաշվի առնելու։ Օրինակ, գիտության արդյունավետությունը որոշ-
վում է ոչ թե անմիջապես ստացված նոր գիտելիքներով, այլ դրանք կիրառելու
հետևանքով ստացվող ժողովրդատնտեսական արդյունքով, կապիտալ ներ-
դրումներինը՝ ոչ թե ստեղծվող հիմնական ֆոնդերի ծավալով, այլ դրանց մի-
ջոցով արտադրվող արժեքներով, օրինակ՝ շահութաբերության գործակցով։
Այդպիսի գնահատականը պայմանականություն ունի և դրա հիման վրա ըն-
դունվող վճիռը կարող է լինել սխալ։ Առավել ուշադրության են արժանի ան-
միջական արդյունավետության ցուցանիշները, իսկ եթե հաշվարկի նպատակը
վերջնական արդյունքի գնահատումն է, ապա անհրաժեշտ է հաշվի առնել դրա
ստացման բոլոր օղակներում ծախսերի մեծությունը։

Ծախսումները և արդյունքը կարելի է չափել բնեղեն կամ արժեքային ար-
տահայտությամբ։ Դրա համապատասխան տարբերվում են արժեքային, բնա-
իրային և արժեքաբնաիրային արդյունավետության ցուցանիշներ։ Առաջինում
և՛ ծախսումները, և՛ արդյունքը չափվում են արժեքային միավորներով, երկ-
րորդում՝ բնաիրային միավորներով, իսկ երրորդում՝ բնութագրերից մեկը
(ծախսումները կամ արդյունքը) չափվում է արժեքային, մյուսը՝ բնաիրային
արտահայտությամբ։ Այսպես, շահութաբերությունը արժեքային արտահայտու-
թյամբ արդյունավետության ցուցանիշ է, դոմնային հնոցի միավոր ծավալի
կամ հաստոցի միավոր մակերեսի հաշվով ստացված չուգունի ծավալը՝ բնեղեն,
իսկ աշխատանքի արտադրողականությունը մեկ մարդու հաշվով թողարկված
արտադրանքի արժեքի ձևով՝ արժեքաբնաիրային։ Առավել լայն կիրառություն
ունեն արժեքային արդյունավետության ցուցանիշները, մյուսները կարելի է
օգտագործել արդյունքը միատարր լինելու դեպքում։

Ըստ ծախսումների կատարման ու դրանց արդյունքի ստացման ժամա-



նակի՝ կարելի է տարբերել ընթացիկ և ապագա արդյունավետության ցուցանիշ-
ներ։ Առաջինը վերաբերվում է այն դեպքին, երբ արդյունքը ստացվում է որ-
պես տվյալ ծախսումների անմիջական հետևանք, իսկ երկրորդը՝ երբ այդ
արդյունքի ստացումը պայմանավորված է այլ ծախսումների հետ, որոնք կա-
տարվելու են հետագայում (օրինակ, ձեռնարկությունը մի քանի հերթով կա-
ռուցելիս)։ Ավելի բարդ է ապագա արդյունավետության ճիշտ գնահատումը,
քանի որ անհրաժեշտ է հաշվի առնել ժամանակի գործոնի ազդեցությունը,
մինչև արդյունքի ստացումը սպասվող փոփոխությունները։ Դրա հետ մեկտեղ
նշենք նաև, որ զուտ տեսքով ապագա արդյունավետությունը քիչ է հանդիպում,
միջոցառումները հեռանկարայինի հետ միասին ապահովում են նաև ընթացիկ
արդյունք, իսկ դրանց համատեղ գնահատումը կապված է մեթոդական բար-
դությունների հետ։ Գործնականում խնդիրը խիստ պարզեցվում է, հաշվի չի
առնվում ժամանակի գործոնի ազդեցությունը, որը բացասաբար է անդրա-
դառնում այնպիսի միջոցառումների արդյունավետության գնահատականի ճըշ-
տության վրա, որոնց արդյունքը սպասվում է ծախսումներ կատարելուց որոշ
ժամանակ անց։

Յուրաքանչյուր միջոցառման համար կարելի է տարբերել յոթ ծախսում-
ների, տարեկան և մի քանի տարիների համար գումարային ծախսումների ար-
դյունավետության ցուցանիշներ։ Առաջինն օգտագործվում է տվյալ միջոցառ-
ման նպատակահարմարությունը հիմնավորելու և արդյունավետության մա-
կարդակը գնահատելու համար։ Երբ ուսումնասիրվում է տարբեր ժամանակ-
ներում իրագործվող միջոցառումներից բաղկացած ագրեգատի կամ ճյուղի
արդյունավետությունը, նպատակահարմար է օգտվել երկրորդ տիպի ցուցա-
նիշներից, նկատի ունենալով, սակայն, դրանց որոշ պայմանականությունը։
Բանն այն է, որ տարվա ընթացքում ստացված արդյունքը (օրինակ, արտա-
դրանքի աճը ճյուղում) միշտ չէ, որ պայմանավորված է հենց տվյալ տարում
կատարված ծախսումներով։ Հնարավոր սխալը մեղմելու նպատակով կարելի է
որոշել մի շարք իրար հաջորդող տարիներում միջին (կամ գումարային) ար-
դյունավետությունը։ Երրորդ տիպի ցուցանիշը նպատակահարմար է օգտա-
գործել նախատեսված ծախսումներին ու արդյունքներին, հետևապես և արդյու-
նավետության նախագծային մակարդակին հասնելու շարժը ուսումնասիրելու
համար, աստիճանաբար երկարացնելով դիտարկվող ժամանակահատվածը։
Ցուցանիշներից յուրաքանչյուրն ունի իր ֆունկցիան, կիրառման ոլորտը և նը-
պատակները, ուստի ամեն կոնկրետ դեպքում անհրաժեշտ է պարզել, թե դրան-
ցից որն է նպատակահարմար օգտագործել։

Ըստ ծախսումների և արդյունքի ընդգրկման շրջանակի՝ կարող են լինել
ընդհանուր և տեղային արդյունավետության ցուցանիշներ։ Երկրորդում, որը
հաճախ անվանում են նաև տնտհաշվարկային արդյունավետության ցուցանիշ
հաշվի են առնվում միայն տվյալ միջոցառման իրագործման համար պահանջ-
վող ծախսումները և դրանց անմիջական արդյունքը, օրինակ, ձեռնարկության
սահմաններում, առանց հաշվի առնելու էկոնոմիկայի այլ օղակների վրա նրա
ազդեցությունը։ Սակայն այդպիսի մոտեցումը սոցիալիստական տնտեսության
համար ընդունելի չէ, այն կարելի է օգտագործել միայն տեղային խնդիրները
լուծելու համար։ Պլանային համամասնական զարգացման սկզբունքը պահան-
ջում է հաշվարկներում նկատի ունենալ նաև ճյուղերի միջև եղած բազմակող-
մանի կապերը, այսինքն, հաշվի առնել տվյալ միջոցառման իրագործմամբ
պայմանավորված՝ տնտեսության այլ օղակներում տեղի ունեցող փոփոխու-
թյունները, դրանց համար պահանջվող ծախսումներն ու վերջինների շնորհիվ
ապահովվող արդյունքը։ Այդ դեպքում կստանանք ընդհանուր արդյունավետու-
թյան ցուցանիշներ, որոնք, անկասկած, ավելի կարևոր են, քանի որ արտա-
հայտում են սոցիալիստական տնտեսության իրական շահերը։ Եթե դրանցում
օգտագործվի տվյալ միջոցառման իրականացման վերջնական արդյունքը,
ապա կստանանք ժողովրդատնտեսական արդյունավետության ցուցանիշ, որի
օգտագործումը միջոցառման տարբերակի ընտրության համար առավել նպա-
տակահարմար է։

ցանիշներն արտացոլում են տնտեսության առանձին օղակների և ծախսումների առանձին ուղղությունների առանձնահատկությունները, կարող են օգտագործվել միայն այդ օղակների կամ նման ծախսումների համար, իմաստ ունեն միայն հատուկ պայմաններում։ Ելնելով ուսումնասիրվող օբյեկտի առանձնահատկություններից և ուսումնասիրության նպատակներից, կարելի է ընտրել համապատասխան հատուկ ցուցանիշներ։

Հարկ է նշել, որ արդյունավետության ցուցանիշների շարադրված դասակարգումը վերջնական համարվելու հավակնություն չունի։ Որոշ հատկանիշներ, ինչպես օրինակ, ցուցանիշների զանազանումը ըստ դրանց քանակական գնահատման հնարավորությունների, արդյունքի ու ծախսումների համաչափման եղանակի, ստացվող արդյունքի ուղղության, տնտեսական ու տարածքային հիերարխիայի մակարդակների և այլն, այստեղ չի արտացոլված։ Բացի այդ, արդյունավետության ցուցանիշների համակարգը դինամիկ է և տնտեսության զարգացման, շահերի բազմազանման և նորանոր պահանջմունքների առաջացմանը համընթաց կծագի արդյունավետության նոր ցուցանիշների անհրաժեշտություն, օգտագործվողների որոշ մասը կկորցնի իր նշանակությունը, կփոփոխվի համակարգի կառուցվածքը, ուստի և կառաջանան դասակարգման նոր հատկանիշներ և հարկ կլինի վերանայել այն։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոն, ելույթ ունենալով Կենտրոնական կոմիտեի 1984 թ. փետրվարյան պլենումում, տնտեսական կադրերին և տնտեսագետներին կոչ արեց բոլոր մակարդակներում համարձակ որոնումներ կատարել էկոնոմիկայի արդյունավետության և ժողովրդի բարեկեցության բարձրացման տեսական ու գործնական հարցերի լուծման նպատակով։ ՍՄԿԿ Կենտկոմը և կառավարությունը վերջին տարիներին մի շարք որոշումներ են ընդունել էկոնոմիկայի զարգացման սկզբունքային հարցերի վերաբերյալ։ Նախատեսվում են հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման, երկրի տնտեսական զարգացման պրոցեսի արագացման մի շարք միջոցառումներ, որոնց թվում նաև տնտեսական մեխանիզմի լուրջ կատարելագործումը։ Կուսակցության մշակած միջոցառումների կենսագործմանը կնպաստի նաև արտադրության տնտեսական արդյունավետությունը գործնականում ճիշտ գնահատելու մեթոդների մշակումը։ Այս առումով կարող է օգտակար լինել հասարակական արտադրության արդյունավետության ցուցանիշների առաջարկվող դասակարգումը։



# ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

**Ռ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ**
ՀԿԿ Գորիսի շրջկոմի առաջին քարտուղար

ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳԻՐԸ ՍՄԿԿ ՏՆՏԵՍԱԿԱՆ քաղաքականության բաղկացուցիչ մասն է, որի իրականացումը մեծապես նպաստում է ոչ միայն գյուղատնտեսության, այլև դրա հետ առնչվող ճյուղերի հետագա վերելքին։

Հիմք ընդունելով ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումի որոշումները և հանրապետության պարենային ծրագիրը՝ ՀԿԿ Գորիսի շրջկոմի պլենումը հաստատել է շրջանի պարենային ծրագիրը, որը ելնում է հողերի բերքատվության բարձրացման և անասունների մթերատվության ավելացման միջոցով շրջանի գյուղատնտեսության ընդհանուր վերելքն ապահովելու շահերից։

Պարենային ծրագրի կատարման գործում շրջանի ներդրումը նշանակալից դարձնելու նպատակով մի անգամ չէ, որ գործարար և սկզբունքային խոսակցություն է ծավալվել կուսշրջկոմի պլենումներում, բյուրոյի նիստերում, ճյուղի աշխատողների խորհրդակցություններում, տարբեր բնույթի հավաքներում։ Շրջկոմը հետամուտ եղավ, որպեսզի սկզբնական կուսկազմակերպություններում, կոլտնտեսականների ու բանվորական կոլեկտիվների ժողովներում ևս, տեղական պայմանների առանձնահատկություններից ելնելով, ճշտորեն սահմանվեն պարենային ծրագրի իրականացման գործնական խնդիրները։ Ընդ որում, խստորեն հաշվի ենք առել բոլոր արժեքավոր դիտողությունները, առաջարկությունները, նկատառումները, որոնք այս կամ այն կերպ կարող են նպաստել հողի, ցանքադաշտերի կոմպլեքսային մշակությանը, գյուղտեխնիկայի, ոռոգման ջրի, հանքային ու օրգանական պարարտանյութերի արդյունավետ օգտագործմանը, կերի բազայի ամրապնդմանը, անասունների ցեղի բարելավմանը։ Այդ ամենի հետ միասին տեսադաշտում ենք պահել նաև ղեկավար ու շարքային աշխատողների պատասխանատվության բարձրացման, սոցիալիստական մրցության կազմակերպման ու ծավալման, առաջավոր փորձի ուսումնասիրման, ընդհանրացման ու տարածման, գյուղի սոցիալական զարգացման, աշխատավորների գաղափարական դաստիարակության խնդիրները։

Անելիքները սահմանելը գործի սկիզբն է միայն։ Հարկ էր կուսակցականկազմակերպչական, մասսայական, քաղաքական-բացատրական ամենօրյա աշխատանքն ուժեղացնելու միջոցով ապահովել առաջադրված խնդիրների լուծումը։ Սակայն այն հանգամանքը, որ շրջանն ունի լեռնային յուրահատուկ պայմաններ և զուրկ է զանգվածային վարելահողերից, ավելի էր դժվարացնում մեր գործը։ Դրա համար էլ կուսակցական լուրջ հանձնարարություն տրվեց «Գյուղտեխպետկոմի» շրջանային միավորման, նրա մեքենամելիորացիոն կայանի ղեկավարներին, կուսկազմակերպությանը, կոմունիստներին՝ առավել ուշադրություն նվիրել հողերի հարթեցմանը, արմատական և մակերեսային բարելավմանը, դարավանդների կառուցմանը և հողաշինական մյուս աշխատանքներին։ Մեզ հաջողվեց միայն վերջին 2—3 տարում լիովին մեքենահարմար դարձնել նախկինում մասնակի օգտագործվող կամ անօգտագործելի 790

հեկտարից ավելի հողատարածություն, որը հենց տվյալ տարում էլ դրվեց գյուղատնտեսական շրջանառության մեջ։ Հողաշինարարական աշխատանքները ներկայումս էլ շարունակվում են։ Կանցնի մի քանի տարի, և առանց բացառության շրջանի բոլոր տնտեսությունները կունենան մեքենայական մշակության համար հարմար, քարերից ու միջնակներից զերծ զանգվածային վարելահողեր։

Կուսշրջկոմը տնտեսությունների կուսկազմակերպություններին, ղեկավարների, գյուղատնտեսության մասնագետների առջև խնդիր է դրել՝ եղած հողատարածությունների հաշվին ապահովել բարձր ու կայուն բերքի ստացումը, ներդնել նոր կուլտուրաներ ու սորտեր։ Շրջանում լայնորեն արմատավորվել է պարենային այնպիսի արժեքավոր կուլտուրաների մշակությունը, ինչպիսիք են ձավարացու հաճարը, լոբին, գազարը և այլն։ Անցած տարի 200 հեկտարի վրա մշակվեց կարտոֆիլ և լավ բերք ստացվեց։ Կորնիձորի կոլտնտեսությունում, օրինակ, հեկտարի միջին բերքը, նախատեսված 105-ի փոխարեն, կազմեց 190,5 ցենտներ։ Շրջանի բնակչության պահանջը լիովի բավարարելուց հետո զգալի քանակությամբ կարտոֆիլ, բանջարեղեն և այլ մթերքներ տրամադրեցինք հարևան շրջաններին։ Որոշել ենք ընթացիկ և հնգամյակի վերջին տարում կարտոֆիլի, բանջարեղենի, լոբազգի կուլտուրաների համախառն արտադրությունը 1980 թ. համեմատությամբ ավելացնել առնվազն մեկուկես անգամ։ Դրան մենք կհասնենք ոչ թե ցանքատարածությունների ընդարձակման, այլ բերքատվության շեշտակի բարձրացման, արտադրամիջոցների արդյունավետ օգտագործման ճանապարհով։

ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ մեր երկրում լայնորեն արմատավորվել է աշխատանքի կազմակերպման ու վարձատրման բրիգադային կապալը, որը լավ արդյունքներ է տալիս։ Այդ առնչությամբ որոշակի քայլեր են արվում նաև մեր շրջանի տնտեսություններում։ Կուսշրջկոմի խորհրդով Խնձորեսկում, Տեղում, Կորնիձորում, «Ավանգարդ»-ում, «Ջանգեզուր»-ում, Խնածախում, Քարահունջում, Վերիշենում, Տաթևում և այլ տնտեսություններում անցած տարվանից օղակային, բրիգադային, անհատական կապալով են աշխատում կարտոֆիլագործները, բանջարաբույծները, ծխախոտագործները, անասնապահները։ Աշխատանքի կազմակերպման այդ առաջավոր եղանակը հնարավորություն է ընձեռում բարձրացնելու աշխատողի անձնական շահագրգռությունը բերքատվության բարձրացման և մթերատվության ավելացման գործում։

Պարենային ծրագրի իրականացման նպատակով հետևողական աշխատանք է ծավալում հատկապես Խնձորեսկի Վ. Ի. Լենինի անվան սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունը։ Այն շրջանի գյուղատնտեսության բնագավառի ամենախոշոր կազմակերպություններից է, ունի 98 անդամ, որոնցից 74-ը անմիջականորեն զբաղված են նյութական արտադրության ոլորտում։ Աշխատանքը բրիգադային կապալի եղանակով կազմակերպելու վերաբերյալ սկզբնական կուսկազմակերպության որոշմանն առաջիններից մեկն արձագանքեց կոմունիստ կթվոր, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, սոցիալիստական աշխատանքի հերոս Արամայիս Հայրյանը։ Վեց մարդուց բաղկացած նրա օղակը խնամում է 200 գլուխ կով։ Խնամքի, կթի աշխատանքները մեքենայացված են։ Օղակի հոգսերը մշտապես գտնվում են կուսբյուրոյի ուշադրության կենտրոնում։ Նոր եղանակն արդեն առաջին տարում լավ արդյունք տվեց. 1983 թ. օղակի խնամած կովերի միջին կաթնատվությունը հասավ 3.000 կգ-ի, այն դեպքում, երբ տնտեսության միջին ցուցանիշը 2.160 է։ Օղակն ստանձնել է նոր պարտավորություն՝ 1984 թվականին մեկ կովից ստանալ 3.800 կգ կաթ։ Կոլեկտիվի լավ աշխատանքի արդյունքը երևում է նաև նրա անդամների վաստակի չափից՝ ամսական 400-ական ռուբլի։

Կամ մեկ այլ օրինակ։ Տարիներ շարունակ նույն տնտեսության թռչնապահական բրիգադը ետ էր մնում։ Սակայն վիճակը կտրուկ փոխվեց աշխատանքը բրիգադային կապալի եղանակով կազմակերպելուց հետո։ Այստեղ ևս նախաձեռնողը և օղակավարը կոմունիստ է՝ Էլիդա Առուշանյանը։ Կնքված պայմանագրով տնտեսությունը պարտավորվել էր մինչև վեց ամսական ճտերի 80 տոկոսից ավելին խնամքով պահելու դեպքում լրացուցիչ գլխաքանակը որպես խրախուսանք տալ օղակի անդամներին։ Անցյալ տարի օղակի խնամքին հանձնված 26 հազար ճտերից 23 հազար 738-ը կամ 91,3 տոկոսը պահպանվեց։ Մինչդեռ նախորդ տարիներին ամենաբարձր ցուցանիշը չի գերազանցել 68 տոկոսից։ Այսպիսով, ճտերի 11,3 տոկոսը որպես լրացուցիչ վարձատրություն տրվեց թռչնապահներին։

Սկզբնական կուսկազմակերպությունը ակտիվորեն զբաղվում է նաև ընտանեկան կապալի արմատավորմամբ։ Առաջին լավ օրինակը կա։ Երիտասարդ կոմունիստ Ալվարդ Հարությունյանի ընտանիքն անցյալ տարի մշակեց 2,5 հեկտար կարտոֆիլի ցանքադաշտ։ Պայմանագրով նախատեսվում էր վարձատրությունից բացի արտապլանային արտադրանքի 20 տոկոսը բնամթերքի կամ դրա արժեքի ձևով տրամադրել մշակողներին։ Ա. Հարությունյանի ընտանիքը նախատեսված 133-ի փոխարեն հեկտարից ստացավ 177 ցենտներ բերք (շրջանի միջին բերքատվությունը 92 ցենտներ է) և որպես խրախուսանք ստացավ 2,3 տոննա կարտոֆիլի արժեքը։

Կարտոֆիլի մշակությամբ զբաղվող կապալային բրիգադներից ամենաբարձր ցուցանիշն ունի Կորնիձորի կոլտնտեսության՝ Ռուբեն Հայրապետյանի ղեկավարած բրիգադը, որը պլանավորված 105 ցենտների փոխարեն հեկտարից ստացավ 190,5 ցենտներ բերք, կամ պլանից ավելի 102,3 տոննա։

Ընթացիկ տարվա համար սոցիալիստական բարձր պարտավորություններ են ստանձնել Խնձորեսկի սովխոզի և Հալիձորի միջտնտեսային ձեռնարկության հացահատիկի արտադրության անկարգագիր օղակները։ Նրանք պարտավորվել են հեկտարի միջին բերքատվությունն անջրդի պայմաններում հասցնել 26—30 ցենտների։ Նման օրինակներ կարելի է շատ բերել։

Կուսշրջկոմը կուսակցական-կազմակերպական աշխատանքի բոլոր ձևերով ու մեթոդներով նպաստում է ագրոարդյունաբերական միավորման խորհրդի գործունեության աշխուժացմանը, գյուղի մարդկանց խանդավառության բարձրացմանը, ստեղծագործական նախաձեռնության ու ակտիվության զարգացմանը, նրանց ողջ ուժերը նպատակամղում պարենային ծրագրի իրականացմանը։ Երեք տարի անընդմեջ Հալիձորի միջտնտեսային ձեռնարկությունը հեկտարից ստանում է 25—31 ցենտներ հացահատիկ։ Մինչդեռ մի շարք տնտեսություններում բերքատվության մակարդակը խիստ ցածր է։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ շրջանում զգալի բերք է կորչում վնասատուների, հիվանդությունների և մոլախոտերի դեմ տարվող թույլ պայքարի, գյուղատնտեսական տեխնիկայի անարդյունավետ օգտագործման պատճառով։ Հենց այս հարցերին էր նվիրված գյուղմասնագետների ու մեխանիզատորների համար 1983 թ. դեկտեմբերին կազմակերպված գործնական սեմինար-խորհրդակցությունը Խնձորեսկի տնտեսությունում։

Գյուղատնտեսական տեխնիկայի նորոգման աշխատանքներն արագացնելու, տեխնիկայի օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու նպատակով շրջկոմի բյուրոն 1983 թ. դեկտեմբերին անդրադարձավ համապատասխան ծառայությունների գործունեությանը, նրանց տվեց որոշակի հանձնարարականներ, սահմանեց կատարման որոշակի ժամկետներ։ Բյուրոն 1984 թ. փետրվարին լսեց ագրոարդյունաբերական միավորման խորհրդի նախագահի և «Հայգյուղտեխպետկոմի» շրջմիավորման կառավարիչի հաշվետվությունները այդ որոշման կատարման ընթացքի մասին և պարզեց, որ արդեն նկատելի տեղաշարժեր կան այդ բնագավառում։ Աշխատանքի կազմակերպման ձևերի ու եղանակների կատարելագործման, արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով պլանավորել ենք շրջկոմի բյուրոյում քննարկել նաև շրջանի ագրոնոմիական ծառայության գործունեության վիճակը։

Ընդհանրապես շրջկոմի բյուրոյում արտադրության հարցերի վերաբերյալ ընդունված որոշումների կատարման նկատմամբ սահմանվում է խիստ հսկողություն, որոշակի ժամկետներ են նշվում նաև շրջկոմի բանավոր հանձնարարությունների կատարման համար։ Դա մեծապես օգնում է՝ բարձրացնելու

կադրերի պատասխանատվությունը, հստակություն մտցնելու կուսակցական, սովետական, տնտեսական օղակների աշխատանքում։

ՍՄԿԿ XXVI համագումարը անասնապահությունը համարեց հարվածային ճակատ գյուղում։ Կուսակցության կոչը անմիջապես մեզ է վերաբերում, քանզի մեր շրջանի գյուղատնտեսական արտադրության որոշիչ ճյուղը անասնապահությունն է։ Ցավոք, տարիներ շարունակ դրա զարգացումը ետ է մնացել առաջադրված պահանջներից։ Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում և Կենտկոմի հետհամագումարյան պլենումներում շրջանի հասցեին այդ առընչությամբ քանիցս քննադատական լուրջ դիտողություններ արվեցին։ Դրությունը շտկելու նպատակով վերջին երկու տարում շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները զգալի աշխատանք կատարեցին։ Մեզ լավ հայտնի է, որ մթերատվության աճի վճռական նախապայմանը կերի ամուր բազայի ընտեղծումն է։ Ու թեև 1982 և 1983 թթ. անբարենպաստ եղանակները գյուղի աշխատավորներին քիչ անակնկալներ չմատուցեցին, այնուամենայնիվ, նրանք կարողացան հասնել աննախադեպ հաջողությունների. անցած տարի, 1980 թ. համեմատությամբ, ավելի կուտակվեց 12 հազար տոննա կոշտ և հյութալի կեր խոտ, ծղոտ, սիլոս, սենաժ, արմատապտուղ։

Կերի առատ պաշարը տնտեսություններին հնարավորություն ընձեռեց անկորուստ, կազմակերպված անցկացնել հանրային հոտի ձմեռային շրջանը, ավելացնել անասունների մթերատվությունը։ Շոշափելի հաջողության ենք հասել անասնապահական կարևոր մթերքի՝ մսի արտադրության ավելացման գործում։ Պետությանն անցած տարի վաճառել ենք 2.846 տոննա միս, որն զգալիորեն ավելի է ստանձնած պարտավորությունից և գերազանցում է 1982 թ. մակարդակը։ Ընդ որում, ավելացել է մթերակայան հանձնած անասունների միջին կենդանի քաշը։ Խնձորեսկի, Տեղի, «Զանգեզուր» սովխոզները, Հալիձորի միջտնտեսային ձեռնարկությունը և այլ տնտեսություններ խոշոր եղջերավոր անասունները մթերակայան են հանձնել 330—360 կգ սպանդային միջին կենդանի քաշով։ Աճի տեմպերն ավելի բարձր են ընթացիկ տարվա անցած ժամանակաշրջանում։ Այսպես, պետությանը Խնձորեսկի սովխոզի հանձնած մեկ տարեկան մատղաշների միջին կենդանի քաշը կազմել է ավելի քան 400 կգ։

Մսի արտադրության հետագա ավելացման նպատակով որոշվեց շրջանում զարգացնել խոզաբուծությունը՝ ընտանեկան կապալի լայն արմատավորմամբ։ Առաջին փորձը կիրառվեց «Զանգեզուր» սովխոզում։ Այստեղ կառուցվեցին խոզանոցներ, ձեռք բերվեցին մերուններ։ Ստացված խոճկորները պայմանագրային կարգով բաշխվեցին գյուղի բնակիչներին։ Շատ չանցած, «զանգեզուրցիները» մթերակայան հանձնեցին 110 կգ միջին կենդանի քաշով 100 գլուխ խոզ և ստացան զգալի քանակությամբ դրամական եկամուտ։ Արժեքավոր նախաձեռնությունը լայն արձագանք գտավ Տեղի սովխոզում, որտեղ գործը կազմակերպվեց ավելի բարձր մակարդակով, սեզմ ժամկետներում կառուցված երկու խոզանոցներում տեղադրվեցին ավտոմատ խմոցներ, աղբի հեռացման սարքավորումներ, ջեռուցիչներ։ Մի խոսքով, ստեղծվեց ժամանակակից ձեռնարկություն, որը հնարավորություն կունենա ամեն տարի պետությանը վաճառելու մեծ քանակությամբ խոզի միս։ Ընդ որում, տարեկան 100 տոննա միս կմթերվի բնակչությանը վաճառած խոճկորների բտման միջոցով։

Տիպային նախագծերով խոզանոցներ են կառուցվել ու շահագործման հանձնվել նաև Հալիձորի միջտնտեսային ձեռնարկությունում։ Մեծ չափով բարձրացել է Խնածախի, Բարձրավանի, Քարաշենի կոլտնտեսությունների խոզաբուծական ֆերմաների արդյունավետությունը։ Մինչև հնգամյակի վերջը նախատեսված է յուրաքանչյուր տարի այդ ֆերմաներից բնակչությանը տրամադրել երկու հազար գլուխ խոճկոր։ Դա նշանակում է, որ շրջանը ամեն տարի պետությանը լրացուցիչ կվաճառի առնվազն 200 տոննա խոզի միս։ Բնակիչների մոտ մսի հարահոս արտադրության ստեղծումը ձեռնտու է և՛ իրենց, և՛ պետությանն ու տնտեսություններին։ Տնտեսությունը առանձնացնում և բնակիչներին է տրամադրում պայմանավորված քանակությամբ կեր, իրականացնում համապատասխան զոոտեխնիկական միջոցառումներ և փոխարենը ազատվում է նոր խոզանոցներ կառուցելու, դրանց համար մեծ միջոցներ, շինանյութեր և մարդկային ուժ հատկացնելու հոգսերից։ Մյուս առավելությունը կերի խնայողությունն է։ Բնակիչների հետ պայմանագրեր կնքելիս յուրաքանչյուր կիլոգրամ քաշաճի համար հատկացվում է շատ ավելի քիչ կերամիավոր, քան պահանջվում է հանրային ֆերմաներում խոզերի բտման համար։ Չէ՞ որ տնային պայմաններում խոզերի կերաբաժնի մեջ մտցվում են նաև սննդի մնացուկները և ուտելու համար ոչ պիտանի կարտոֆիլը, բանջարեղենը, միրգը և այլն։ Եթե ավելացնենք, որ տնտեսությունները զերծ են մնում այնպիսի ծախսերից, ինչպիսիք են հաստիքային անասնապահների աշխատավարձը, ֆերմաների սարքավորումների արժեքը, խոզանոցների պահպանման ու նորոգման ամորտիզացիոն հատկացումները, ապա տնային մսահարահոսի տնտեսական արդյունավետությունն ակներև է դառնում։ Ընտանեկան կապալի եղանակով խոզաբուծության զարգացումն ունի նաև սոցիալական ու բարոյական նշանակություն։ Դրանով հնարավոր է դառնում հանրօգուտ աշխատանքում ներգրավել տվյալ ընտանիքի ազատ աշխատուժը, ապահովել երեխաների աշխատանքային դաստիարակությունը։

Պարենային ծրագրի իրականացման գործում վճռորոշ նշանակություն ունի կաթի և կաթնամթերքների արտադրության մակարդակի բարձրացումը։ Ելնելով դրանից՝ կուսշրջկոմը, շրջսովետի գործկոմը, նրա ագրոարդյունաբերական միավորման խորհուրդը և տնտեսությունների կուսկազմակերպությունները ձեռնարկել են կոմպլեքսային միջոցներ՝ այդ ասպարեզում սեղմ ժամկետում նշանակալից արդյունքների հասնելու համար։ Նախ՝ բարձրկաթնատու, ցեղային լավ հատկանիշներ ունեցող կովերից ստացված էգ հորթերը աճեցվում են բացառապես մայրական կազմը համալրելու համար, և, երկրորդ, այլ հանրապետություններից ձեռք ենք բերել ու Խնձորեսկի, Տեղի, «Զանգեզուրի», Շինուհայրի, Կորնիձորի, Քարահունջի տնտեսություններին տրամադրել սևաբղետ և կարմիր-տափաստանային ցեղի բարձրմթերատու 830 երինջներ։ Բացի այդ, «Ավանգարդ» և այլ տնտեսություններից մեծ թվով տոհմային էգ մատղաշներ ու երինջներ են ձեռք բերել Հարժիսի, Տեղի սովխոզները, որոնց կովերի մի մասը հիվանդության պատճառով խոտանվել է։ Մեկընդմիշտ բարելավվել է կովերի ու երինջների արհեստական սերմնավորման գործը։ Դրա շնորհիվ նախորդ տարիների համեմատությամբ ստերջությունը կիսով չափ նվազել է, ստացվել է վաղ ծին։ Ահա արդյունքը. անցած տարվա աշնանից սկսած շրջանում անհամեմատ բարձրացել է կաթի արտադրության ու մթերումների մակարդակը։

Անցյալ տարի շրջանում ամեն մի կովից 3.000 և ավելի կգ կաթ էին ստացել ընդամենը յոթ կթվորներ, մինչդեռ այս տարի արդեն տարբեր տնտեսություններից կթվոր երեքհազարականների ակումբի անդամ դառնալու համար պայքարում է 25 հոգի։ Շրջանի բոլոր տնտեսությունների կթվոր-անասնապահները յուրաքանչյուր կովից տարեկան 2.000 կիլոգրամ կաթ ստանալն այժմ համարում են նվազագույն առաջադրանք։

Կուսշրջկոմը և ագրոարդյունաբերական միավորման խորհուրդը լրջորեն մտահոգվում են, որպեսզի հանրային հոտում տարեցտարի մեծանա կովերի տեսակարար կշիռը։ Տնտեսությունների առջև խնդիր ենք դրել մինչև հնգամյակի վերջը շուրջ 1000-ով ավելացնել կովերի գլխաքանակը։ Դրանով մենք կարող ենք ներկայիս 11,8 հազարի դիմաց տարեկան արտադրել 13,1 հազար տոննա կաթ։

Շրջանում բավականին հուսալի հիմքեր կան թռչնաբուծության զարգացման համար։ Մտադիր ենք Խնձորեսկի, Տեղի ու Կորնիձորի տնտեսությունների թռչնաբուծական մանր ֆերմաները միավորել ու խոշորացնել։ Հետագայում այդ բազայի վրա կստեղծենք թռչնաբուծական բարձրարտադրողական ձեռնարկություն, որը լիովին կբավարարի ձվի և թռչնի մսի նկատմամբ շրջանի բնակչության պահանջարկը։

Անասնապահության հետագա վերելքի համար շրջանում ամուր հիմքեր են

Քարաշեն և այլ գյուղերի, ինչպես նաև Գորիս քաղաքի բնակչությանը խմելու ջրով ապահովելու հարցը։

ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ իրականացման հաջողությունն ապահովելու համար շրջկոմը հետևողականորեն զբաղվում է մի շարք կարևոր հարցերի լուծմամբ։ Հարկ է նշել, որ շրջանի դեռևս ոչ բոլոր տնտեսություններն են արդյունավետորեն օգտագործում իրենց ունեցած հնարավորությունները։ Տարիներ շարունակ հողերի բերքատվությունը և անասունների մթերատվությունը շրջանի միջինից ցածր մակարդակի վրա է Շինուհայրի, Խոտի, Խողնավարի, Բարձրավանի, Վաղատուրի, Սվարանցի, Տաթևի և այլ տնտեսություններում։ Աննշան է օժանդակ ճյուղերից՝ այգեգործությունից, մեղվաբուծությունից ստացվող եկամուտը։ Իրենց առաջադրանքները թերակատարում են շրջանի բանջարաբույծները, ծխախոտագործները։ Առաջավոր փորձը ոչ ամենուրեք է ժամանակին ուսումնասիրվում ու տարածվում։ Մսի, կաթի, կարտոֆիլի, պտղի, ձվի, բրդի և այլ մթերքների զգալի ռեսուրսներ մնում են չօգտագործված՝ կոլտնտեսականներից, բանվորներից ու ծառայողներից դրանց գնումները վատ կազմակերպելու պատճառով։

Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները հետևողականորեն կլուծեն այդ բոլոր խնդիրները և աշխատավորության ուժերի մոբիլիզացման, մրցության գործարարության ապահովման շնորհիվ հնգամյակի չորրորդ տարին կնշանավորեն գյուղատնտեսական արտադրության ասպարեզում ձեռք բերած նոր հաջողություններով։ Այդ գործում մեզ համար ուղեցույց են ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան, ՀԿԿ Կենտկոմի մարտյան (1984 թ.) պլենումների պահանջները։

Մեր շրջանի գյուղական կոմունիստները, դաշտի և ֆերմայի աշխատավորները ուշի-ուշով և մեծ հետաքրքրությամբ հետևում էին ագրոարդյունաբերական համալիրի պրոբլեմներին նվիրված համամիութենական խորհրդակցության ընթացքին։ Խորհրդակցությունը կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների ուշադրությունը հրավիրեց ինտենսիվացման բոլոր գործոնների կիրառմամբ գյուղատնտեսական արտադրության արդյունավետության ըստ ամենայնի բարձրացման, բոլոր օղակներում ամուր կարգապահության հաստատման, աշխատանքի կազմակերպման առաջադիմական ձևերի արմատավորման, հողագործական և անասնապահական մթերքների արտադրության շեշտակի ավելացման, հողի հմուտ ու ռացիոնալ օգտագործման, գյուղի սոցիալական վերակառուցման և հրատապ այլ խնդիրների վրա։ Այդ խնդիրների լուծման գործում խորհրդակցությունն ըստ ամենայնի կարևորեց էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման մակարդակի և արտադրության վերջնարդյունքի համար կադրերի պատասխանատվության բարձրացման անհրաժեշտությունը։ Այդ ամենի համար, ասաց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն, հարկավոր է ոչ միայն բարելավել ղեկավարման կազմակերպական մեթոդները, այլև բարձրացնել մեր կադրերի տնտեսագիտական մտածողության մակարդակը։

Անշուշտ, շրջանի կուսակցական կազմակերպությունները և տնտեսական ղեկավարներն ու մասնագետները անհրաժեշտ հետևություններ կանեն խորհրդակցության պահանջներից և լուրջ բեկում կմտցնեն գյուղատնտեսական արտադրության կուսակցական ղեկավարման, ագրոարդյունաբերական շրջանային միավորման գործունեության մեջ, կապահովեն պարենային ծրագրով նախատեսված առաջադրանքների կատարումը ինչպես ընթացիկ տարում, այնպես էլ ողջ հնգամյակում։

---

# ՑԱՄԱՔԱՅԻՆ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԷՆԵՐԳԵՏԻԿԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

**Հ. ՄԱՔՍԱՊԵՏՅԱՆ**
Տեխնիկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԽՆԴԻՐ ԴՐԵՑ իրագործել տրանսպորտի բոլոր տեսակների աշխատանքը բարելավելու միջոցառումներ և ապահովել դրանց զարգացումը ժողովրդական տնտեսության ու բնակչության պահանջմունքներին լրիվ համապատասխան։

Տրանսպորտն այսօր բուռն տեմպերով աճում է ոչ միայն ավանդական միջոցների, այլև նոր ձևերի ստեղծման շնորհիվ։ Համագումարի որոշումները պահանջում են «ստեղծել սկզբունքորեն նոր տեսակի տրանսպորտային միջոցներ, ինչպես նաև տրանսպորտային էներգաուժային կայանքներ, որոնք ապահովեն վառելիքի և էներգիայի ծախսման էական կրճատում» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 233)։

Արդի պայմաններում տրանսպորտի ոչ մի ձև չի կարող գործել առանց ինժեներական համապատասխան ինֆրակառուցվածքի՝ երկաթուղիների, ավտոմոբիլային ճանապարհների, ծովային և գետային նավահանգիստների, օդանավակայանների և այլն։ Իսկ այդ ամենը իրականացվում է միայն երկարաժամկետ պլանների հիման վրա (օրինակ ԲԱՄ-ը, Թբիլիսի—Օրջոնիկիձե, Երևան—Իջևան—Աղստաֆա երկաթուղագծերը և այլն)։ Սովորաբար գիտատեխնիկական նախատեսումները կատարվում են ապագայի այնպիսի ժամանակահատվածի համար, որը համապատասխանում է գիտելիքների այսօրվա մակարդակին, գիտության և տեխնիկայի նվաճումներին, ընդ որում հաշվի առնելով նաև առկա, բայց դեռևս չկիրառվող գյուտերն ու հայտնագործությունները։ Մեր օրերում, օրինակ, արդեն անհրաժեշտ է մշակել տրանսպորտի զարգացման հիմնական ուղղությունները XXI դարի առաջին քառորդի համար։ Նո՞ւյնը կլինեն արդյոք գալիք դարի տրանսպորտային միջոցները, ինչ այսօր, կպահպանվի՞ արդյոք ներքին այրման շարժիչը՝ որպես ավտոմոբիլների, ջերմաքարշերի և ջերմանավերի ուժային տեղակայանքի հիմնական տիպ, կպահպանվի՞ արդյոք անիվը՝ որպես ավտոմոբիլների և երկաթուղու շարժակազմի շարժաբեր, կպահպանվե՞ն արդյոք հենց իրենք, ռելսային ուղիները, ինչպե՞ս կփոփոխվի քաղաքային տրանսպորտը, ինչպիսի՞ սկզբունքորեն նոր տիպի տրանսպորտային միջոցներ կստեղծվեն և ինչպիսին կլինեն դրանց համապատասխան ինժեներային ինֆրակառուցվածքային օբյեկտները։ Այս բոլոր հարցերը սպասում են պատասխանի։ Սակայն արդի պայմաններում առավել հրատապ է տրանսպորտի էներգետիկական պրոբլեմը և շրջակա միջավայրի վրա դրա ունեցած ազդեցությունը։

Հայտնի է, որ նշված պրոբլեմն ունի գլոբալ բնույթ, թեև այն տարբեր ձևով է դրսևորվում աշխարհի տարբեր երկրներում. այստեղ էական դեր են խաղում տվյալ երկրի հասարակարգը, նրա զարգացման աստիճանը, աշխարհագրական և դեմոգրաֆիական առանձնահատկությունները և այլն։ Սակայն, չնայած վերոհիշյալ առանձնահատկություններին, էներգետիկական պրոբլեմն ունի նաև ընդհանուր միտումներ, որոնք պայմանավորված են հանածո վառելիքի պաշարների սահմանափակությամբ, արդյունաբերական արտադրության շեշտակի աճով և ուրբանիզացմամբ։

Տեխնիկայում տարբերում են սկզբնային, երկրորդվող, վերջնային և օգտակար էներգիայի ձևերը։ Ցամաքային տրանսպորտի ավանդական միջոցների համար (ավտոմոբիլ, ջերմաքարշ) սկզբնային էներգիայի աղբյուր է հում նավթը, երկրորդվող էներգիան՝ բենզինն ու դիզելային վառելիքը, վերջնայինը՝ շարժիչի մեխանիկական էներգիան, իսկ օգտակարը՝ կատարված տրանսպորտային աշխատանքը։

Էներգիայի բոլոր վերափոխությունները (սկզբնայինից մինչև օգտակար) կապված են կորուստների հետ, որոնք հասնում են 95 և ավելի տոկոսի։ Սակայն քանի որ ըստ էներգիայի պահպանման օրենքի այն «կորչել» չի կարող, ավելի ճիշտ կլինի ասել, որ էներգիան վերափոխվում է իր ջերմային ձևին, կատարելով շրջակա միջավայրի ջերմային աղտոտում։

ՄԱԿ-ի տվյալներով, 1980 թվականին աշխարհի բոլոր երկրները արտադրել են 10 տերավատտ սկզբնային էներգիա (բազային 1975-ին՝ 8,21 տվտ)։ Մշակված են էներգիայի արտադրանքի նախիմացության առավելագույն և նվազագույն տարբերակները՝ 2000 և 2030 թվականների համար։ Մասնագետների մեծ մասը նախապատվությունը տալիս է նվազագույն տարբերակին, ըստ որի 2000 թ., երբ մոլորակի բնակչությունը կկազմի 6,7 մլրդ մարդ, էներգիայի արտադրությունը կհասնի 13,59 տվտ-ի, իսկ 2030 թ. (բնակչության թիվը 10,5 մլրդ մարդ))՝ 22,34 տվտ-ի։ Իհարկե, որքան էլ խորը լինեն կատարված հետազոտությունները, դրանք չեն կարող մեծ ճշտությամբ նախագուշակել մարդկության էներգետիկական ապագան, սակայն կարող են ցույց տալ զարգացման միտումները և տեխնիկական խնդիրների լուծման ուղիները, մի բան, որ հատկապես կարևոր է տրանսպորտի համար։

Մեր խնդրի առումով հետաքրքրություն է ներկայացնում էներգիայի արտադրանքի դինամիկան ըստ նրա սկզբնական աղբյուրների։ Այսպես, եթե 1975 թ. նավթը, գազը և ածուխը տալիս էին ողջ արտադրվող էներգիայի 90 տոկոսը, ապա 2000 թ. դրանց բաժինը կիջնի մինչև 82, իսկ 2030-ին՝ մինչև 66 տոկոսի (չնայած բոլոր նշված աղբյուրների բացարձակ աճին)։ Սպասվում է ատոմային էներգիայի բուռն աճ՝ 1975 թ. 1,4 տոկոսի փոխարեն 2030-ին մինչև 23 տոկոս։ Կանխատեսումները ցույց են տալիս նաև, որ աճելու են էներգիայի, այսպես կոչված, վերականգնելի կամ ալտերնատիվ աղբյուրները, որոնց թվին դասվում են հիդրավլիկական, արեգակնային, հողմային, բնական տաք ջրերի, մակընթացության էներգիան և այլն։ Հիդրավլիկական էներգիայի արտադրանքը կաճի մոտ 3 անգամ, սակայն դրա բաժինն ընդհանուր էներգիայի քանակությունում կմնա 6 տոկոսի սահմաններում։ Մեծ հույսեր են կապվում արեգակնային էներգիայի օգտագործման հետ։ Նախնական հաշվարկները ցույց են տալիս, սակայն, որ 2000 թ. արեգակնային էներգիայի բաժինը կկազմի արտադրվող էներգիայի 0,64, իսկ 2030-ին՝ միայն 1,3 տոկոսը։ Այնպես որ սխալ կլինի կարծել, թե տեսանելի ապագայում արեգակնային էներգիան էներգետիկական բալանսից դուրս կմղի հանածո վառելիքը, իսկ «արեգակնային» տրանսպորտը լայն զարգացում կստանա։

Մինչև հիմա դիտում էինք էներգիայի պրոբլեմի համընդհանուր հեռանկարները։ Դա բնավ չի նշանակում, թե ռեգիոնալ և ազգային մակարդակներով էներգիայի արտադրանքի տարբերություններ չկան ներկայումս և չեն լինի ապագայում։ Ընդհակառակն, ինչպես էներգիայի արտադրանքի և սպառման, այնպես էլ, մանավանդ, սկզբնական էներգիայի աղբյուրները նույնը չեն աշխարհի տարբեր երկրներում և ռեգիոններում։ Ըստ երևույթին երկար տարիներ աշխարհում կլինեն էներգիա ներմուծող և արտահանող երկրներ։ Որոշ երկրներում նախապատվությունը կտրվի ածխին, մի այլ տեղ՝ ատոմային էներգիային, երրորդում՝ հիդրոէներգիային, չորրորդում՝ կենսազանգվածին և այլն։

Էներգետիկական ճգնաժամը, որը 70-ական թվականների սկզբներից համակել է աշխարհի շատ երկրներ, մեր երկիրը չշոշափեց։ Սակայն մենք ևս ունենք որոշակի դժվարություններ։ Մեր հանածո էներգետիկական ռեսուրսների 80 տոկոսը գտնվում է երկրի արևելյան մասում և հյուսիսում, իսկ էներգիայի 80 տոկոսը սպառվում է եվրոպական մասում։ Այսպիսով, ծագում է



բարդ գիտատեխնիկական և տնտեսական մի պրոբլեմ, կապված էներգիան արևելքից արևմուտք փոխադրելու հետ։ Էներգիայի փոխադրման միջոցները տարբեր են. կարելի է նավթը, ածուխը, գազը փոխադրել սպառման վայրերը երկաթուղով կամ խողովակային տրանսպորտով (նավթամուղ, գազամուղ և այլն), կարելի է նաև հանքավայրերի մոտակայքում կառուցել հզոր էլեկտրակայաններ և փոխադրել երկրորդվող էներգիան՝ էլեկտրականը։ Փոխադրման բոլոր միջոցներն էլ թանկ են, կապված են մեծ կորուստների հետ և պահանջում են հսկայական ներդրումներ։ Դա է պատճառը, որ էներգիան թանկանում է նաև մեզ մոտ և անհրաժեշտ է այն բոլոր հնարավոր միջոցներով տնտեսել՝ ստեղծելով էներգախնայիչ մեքենաներ և տեխնոլոգիաներ։

Հեղուկ նավթային վառելիքն արդեն շուրջ մեկ դար հսկայական տրանսպորտային պարկի վառելիքի հիմնական տիպն է։ Դա բացատրվում է նրանով, որ այն ունի բարձր ջերմունակություն և դրա պաշարը հեշտությամբ կարելի է տեղավորել տրանսպորտային միջոցի վրա ու պահեստավորել։ Սակայն աշխարհի նավթային պաշարները սահմանափակ են, և եթե պահպանվեն դրանց ծախսման այժմյան տեմպերը, կսպառվեն առաջիկա 70—80 տարում։ Կարելի է կասկածի տակ դնել նավթային վառելիքի օգտագործման տեմպերը և դրա պաշարների սպառման ժամկետները։ Սակայն անտարակույս է, որ պաշարները կսպառվեն և հետևաբար անհրաժեշտ է փնտրել նավթային վառելիքի փոխանյութեր։

Նավթային վառելիքի փոխանյութերի հետազոտման կապակցությամբ հարկ կա վերլուծելու էլեկտրամոբիլի հնարավորությունները, որովհետև այն ծախսում է էլեկտրաէներգիա, որը էլեկտրակայաններում արտադրվում է ո՛չ միայն նավթից, այլ նաև քարածխից, գորշածխից, տորֆից, հիդրավլիկական և ատոմային էներգիայից։

Էլեկտրամոբիլը ավտոմոբիլի համեմատությամբ ունի երկու կարևոր առավելություն՝ էկոլոգիապես մաքուր է և անաղմուկ։ Այս առավելություններն իսկապես շատ կարևոր են, եթե նկատի ունենանք, որ ավտոմոբիլները մթնոլորտ են արտանետում տարեկան մոտ 280 միլիոն տոննա տարբեր, գլխավորապես թունավոր նյութեր, իսկ տրանսպորտային աղմուկը շատ քաղաքներում բարձր է թույլատրելի նորմաներից։

Ինչպես էլեկտրամոբիլների կողմնակիցները, այնպես էլ նրանց ընդդիմախոսները նշում են նաև էլեկտրամոբիլի էական թերությունները՝ նրա մեծ նյութատարողությունը, անբավարար էներգատարողությունը, և որպես դրանց հետևանք՝ էլեկտրամոբիլի ավտոնոմ շարժման շառավղի փոքրությունը (ժամանակակից լավագույն էլետրամոբիլների այդ ցուցանիշները 4—6 անգամ ավելի փոքր են, քան մասսայական ավտոմոբիլներինը)։ Նշվում են նաև էլեկտրամոբիլի լիցքավորման տեխնոլոգիական դժվարությունները՝ մարտկոցների լիցքավորումը կամ փոխանակումը։ Միևնույն ժամանակ, էլեկտրամոբիլների կողմնակիցները նշում են, որ դրա թերությունները ժամանակակից ակումուլյատորային մարտկոցների անբարենպաստ բնութագրերի հետևանք են, և որ դրանք կվերանան ավելի մեծ էներգատարողության մարտկոցներ ստեղծելու հետ միասին։

Եվ, այնուամենայնիվ, չի կարելի հաշվի չառնել այն իրողությունը, որ այսօր գոյություն ունեցող ցամաքային տրանսպորտային միջոցներից էլեկտրամոբիլը էներգետիկական տեսակետից ամենից ավելի «շռայլն» է և, հետևապես, տեսանելի ապագայում այն հազիվ թե ի վիճակի լինի փոխարինել ավտոմոբիլային պարկին։

Ասվածը ամենևին չի նշանակում, թե էլեկտրամոբիլը ապագա չունի ընդհանրապես։ Այն այսօր էլ կիրառվում է որպես ներգործարանային, ներպահեստային տրանսպորտ, իսկ ապագայում հնարավոր է, որ առավել լայն կիրառում գտնի մեծ քաղաքների և առողջարանային շրջանների առևտրական ու սպասարկող ցանցում, այսինքն այնտեղ, որտեղ ավտոմոբիլային արտանետումներն ու աղմուկը առավել անթույլատրելի և վտանգավոր են։

Նշենք, սակայն, որ այդտեղ էլ էլեկտրամոբիլն այսօր ունի լուրջ մրցա-

կիցներ, ի դեմս գազաբալոնային ավտոմոբիլների, իսկ ապագայում կունենա ավելի հզոր մրցակիցներ (ջրածնային ավտոմոբիլներ, ջերմակառքեր և այլն)։

Էլեկտրամոբիլի համեմատաբար լայն կիրառման համար անհրաժեշտ է գտնել մի շարք բարդ տնտեսական և գիտատեխնիկական պրոբլեմների լուծում, որոնցից ամենաբարդը թերևս բարձր էներգատարողության և էժանագին ակումուլյատորային մարտկոցների ստեղծումն է։ Ահա թե ինչու ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման, ՍՄԿԿ XXVI համագումարի հիմնական ուղղություններում էլեկտրամոբիլների արտադրությունը կապվում է արդյունավետ հոսանքի աղբյուրների ստեղծման հետ։ Եվ դա զարգացման միակ ճիշտ ուղին է։

Նպատակահարմար է զարգացնել կոնտակտային ցանցից սնվող էլեկտրական տրանսպորտը՝ էլեկտրիֆիկացված երկաթուղին, մետրոպոլիտենը, տրամվայը, տրոլեյբուսը (վերջինները ոչ միայն ուղևորատար, այլ նաև բեռնատար փոխադրումների համար)։

Մեր հանրապետության երկաթուղագծերի շահագործային երկարության 87,2 տոկոսը էլեկտրիֆիկացված է։ Դա շատ բարձր ցուցանիշ է, եթե նկատի ունենանք, որ ՍՍՀՄ միջին ցուցանիշը հավասար է 31,4-ի, իսկ ԱՄՆ-ում էլեկտրիֆիկացված է երկաթուղու ընդհանուր երկարության միայն մեկ տոկոսը։ Դրա հետ մեկտեղ հարկ է նշել, որ էլեկտրիֆիկացված տրանսպորտը (տրամվայ, տրոլեյբուս) մեզ մոտ բոլորովին չի օգտագործվում բեռնատար փոխադրումների համար, ինչպես վաղուց ի վեր դա արվում է Միության շատ քաղաքներում։

Այսօր արդեն օրակարգի հարց է անընդհատ համալրվող և հարստացող ավտոմոբիլային անհոլի պարկի համար անհրաժեշտ նավթային վառելիքի հուսալի փոխանյութի որոնումը։ Այս առումով գործնական հետաքրքրություն են ներկայացնում սինթետիկ բենզինը, գազը, սպիրտները և ջրածինը։

Սինթետիկ բենզինը ստացվում է հիմնականում քարածխի վերամշակման միջոցով։ Արվում են նաև կենցաղային աղբից դրա ստացման փորձեր։ Անհրաժեշտ է, սակայն, նկատի ունենալ, որ սինթետիկ բենզինը նավթայինից պակաս թունավոր չէ և, հետևապես, չի բավարարում ապագա վառելիքին ներկայացվող գլխավոր պահանջներից մեկը՝ շրջակա միջավայր արտանետվող թունավոր նյութերի մակարդակի իջեցումը։

Սովետական Միությունն ունի ավտոմոբիլային տրանսպորտում գազի կիրառման ամենից ավելի հարուստ փորձ։ Գազը բենզինից 2—3 անգամ էժան է, իսկ գազով աշխատող շարժիչներն ավելի երկարակյաց են։ Բացի դա, գազային ավտոմոբիլների թունավոր արտանետումները 5—10 անգամ ավելի նվազ են։ Գազաբալոնային ավտոմոբիլների ինքնարժեքը 10—20 տոկոսով բարձր է, սակայն դա փոխհատուցվում է շահագործական ծախսերի նվազեցումով։ Լուրջ տնտեսական պրոբլեմ է գազալիցքավորման կայանների ստեղծումը։ Չնայած ներդրման որոշ դժվարություններին, մեր երկրում զարգանում է գազաբալոնային ավտոպարկը հատկապես մեծ քաղաքներում և առողջարաններում։ Հայրենական ավտոմոբիլային արդյունաբերությունը արտադրում է հեղուկ և խտացրած գազով աշխատող մի շարք մակնիշների ավտոմոբիլներ։ Տեխնիկայի զարգացման այսօրվա մակարդակի պայմաններում գազային ավտոմոբիլների լայն կիրառումը մեծ քաղաքներում և առողջարաններում մթնոլորտը թունավոր արտանետումներից վնասազերծելու միակ ռեալ ելքն է։ Հանրապետության ավտոտրանսպորտի մինիստրության ձեռնարկություններն արդեն ստացել են գազաբալոնային ավտոմոբիլներ՝ մայրաքաղաքը սպասարկելու համար։ Սկսվել են դրանց շահագործման նախապատրաստական աշխատանքները։ Դա միայն առաջին քայլերն են. հետագայում բնական գազով աշխատող ավտոմոբիլները ավելի լայնորեն կկիրառվեն ոչ միայն Երևանում, այլև հանրապետության այլ քաղաքներում։

Սպիրտները, որպես վառելիք, եղել են նավթային վառելիքի նախորդները։ Դրանց նկատմամբ հետաքրքրությունը վերստին սկսվեց 70-ական թվականներին՝ էներգետիկ ճգնաժամի կապակցությամբ։ Բայց սպիրտների էներգատարողությունը մոտ 2 անգամ ավելի փոքր է, քան բենզինինը, իսկ սպիրտի



միջոցով շարժիչը գործի դնելը լուրջ դժվարությունների հետ է կապված։

Վերջին տարիներին լայնորեն տարածվել է այսպես կոչված ջրածնային էներգետիկայի գաղափարը։ Ջրածինը տիեզերքի ամենաթեթև և ամենից ավելի տարածված տարրն է, որն ունի բենզինից երեք անգամ ավելի մեծ էներգատարողություն։ Այրվելով՝ այն վերածվում է ջրի և, այսպիսով, իրենից ներկայացնում է ինքնավերականգնվող և մթնոլորտը չապականող վառելանյութ։ Ջրածնի օգտագործման մեծ փորձ կա հատկապես ավիացիայում։ Ավտոմոբիլային շարժիչների համար կարող են օգտագործվել ջրածնային վառելիքամարտկոցները, երբ գազանման ջրածնով լիցքավորված բաքը տեղակայվում է ավտոմոբիլի վրա։ Սակայն ջրածնի արտակարգ փոքր խտության պատճառով բաքերի ծավալը չափազանց մեծ է ստացվում։ Պրոբլեմը չի լուծում նաև հեղուկ ջրածնի կիրառումը, որովհետև այդ դեպքում անհրաժեշտ է օգտագործել մեծազանգված կրիոգեն տեղակայանքներ (սուպերթերմոսներ), քանզի հեղուկ ջրածնի ջերմաստիճանը մինուս 253 է։ Առավել հեռանկարային են մետաղային հիդրիդներով աշխատող շարժիչները։ Մետաղային հիդրիդները կարծր միացություններ են (օրինակ, տիտանի, մանգանի կամ երկաթի), որոնք տաքացվելիս ջրածին են առանձնացնում։ Օգտագործելուց հետո հիդրիդը վերականգնվում է՝ գազանման ջրածինը բաք մղելու միջոցով։

1983 թ. հուլիսին Երևանում կայացած գիտատեխնիկական կոնֆերանսում քննարկվեցին Ուկրաինական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի մեքենաշինության պրոբլեմների ինստիտուտի՝ ջրածնային ավտոմոբիլի վերաբերյալ մշակումները։ Քննարկումը ցույց տվեց, որ որոշակի արդյունքներ են ձեռք բերվել ջրածնաբենզինային խառնուրդով աշխատող շարժիչների փորձարկման ասպարեզում։ Հետազոտությունները շարունակվում են, սակայն ինչպես մեզ մոտ, այնպես էլ աշխարհի այլ երկրներում դեռևս չեն հաղթահարված ջրածնի ստացման տնտեսական և տեխնոլոգիական լուրջ դժվարությունները։

Ընդհանրացնելով, կարելի է ասել, որ նավթային վառելիքի դիտված և ոչ մի փոխանյութ այսօր նրա բացարձակ համարժեքը համարել չի կարելի։ Առաջիկա մեկ, երկու տասնամյակներ դեռ կանցնեն նավթային վառելիքի և փոխանյութերի խառնուրդների կիրառման նշանաբանով (գազ—բենզին, սպիրտ—բենզին, ջրածին—բենզին և այլն)։ Մեր հանրապետության պայմաններում լավ հեռանկարներ ունեն մասնավորապես գազ-բենզին խառնուրդով աշխատող շարժիչները, որոնց շահագործումը կսկսվի արդեն այս տարի։ Հեռու ապագայում, երբ կլուծվեն էժանագին ջրածնի ստացման բարդ գիտատեխնիկական և տնտեսական պրոբլեմները, տրանսպորտային միջոցները կանցնեն ջրածնային շարժիչների լայն կիրառմանը։

Տրանսպորտի էկոլոգիական պրոբլեմներն անբաժանելիորեն կապված են դրա էներգատեխնիկական պրոբլեմների հետ, որովհետև տրանսպորտային միջոցների վնասակար ազդեցությունը շրջակա միջավայրի վրա առաջին հերթին կապված է այն բանի հետ, թե ինչ վառելիք և ինչ տիպի շարժիչ են օգտագործվում տվյալ մեքենայի վրա։

Շրջակա միջավայրի վրա ցամաքային տրանսպորտային միջոցների վնասակար ազդեցությունն արտահայտվում է ճանապարհների և տրանսպորտային կառույցների համար հողի զգալի մակերեսների օտարման, տեղանքի հիդրոլոգիական բնական ռեժիմի խախտման, վառելիքով, յուղերով, լվացքաջրերով, հիդրոսֆերայի աղտոտման, մթնոլորտի թթվածնի և հանածո վառելիքի մեծ քանակությունների սպառման, թունավոր թափոններով մթնոլորտի աղտոտման, աղմուկի թույլատրելի նորմաների գերազանցման մեջ։

Հողի վրա տրանսպորտի բացասական ազդեցությունն արտահայտվում է տրանսպորտային կառույցների համար հողի անմիջական զբաղեցմամբ, մակերեսային և մինչև իսկ ստորգետնյա ջրերի հոսքի ռեժիմների խախտմամբ, դրանք թունավոր թափոններով աղտոտելու մեջ։ Գրունտային ճանապարհները, բացի այդ, հողի էրոզիայի պատճառ են դառնում։ Առանց ճանապարհային շինարարության, իհարկե, հնարավոր չէ իրականացնել երկրի տնտեսական և սոցիալական զարգացման վիթխարի պլանները։ Ցամաքային տրանսպորտի

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԻՆՖՈՐՄԱՑԻԱՅԻ ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԸ

**Ծ. ԹԱՅԻՐՅԱՆ**
Տեխնիկական գիտությունների թեկնածու
**Ե. ԺԱՄԿՈՉՅԱՆ**
Մանկավարժական գիտությունների թեկնածու

Մեր ժամանակներում գիտատեխնիկական ինֆորմացիան (ԳՏԻ) գիտական, գիտատեխնիկական, արտադրական և հասարակական գործունեության ընթացքում ստացված փաստերի և փաստագրերի մասին տեղեկություններ հավաքելով ու հաղորդելով, վճռական դեր է խաղում ժողովրդական տնտեսության առջև դրված կարևոր խնդիրները հաջողությամբ լուծելու գործում։ Հայրենական և արտասահմանյան գիտության, տեխնիկայի ու առաջավոր արտադրական փորձի նորագույն նվաճումների մասին ինֆորմացիան կարևորագույն գործոն է ժողովրդական տնտեսության կառավարման համար, որը հետևողական ու պլանաչափ կերպով բարձրացնում է արտադրության տնտեսական արդյունավետությունը։ Արտացոլելով գիտական հետազոտությունների, նախագծային-կոնստրուկտորական մշակումների և արտադրական գործունեության արդյունքները՝ այն նպաստում է գիտաարտադրական մտահղացումների արագ տարածմանը, գիտական և նախագծային-կոնստրուկտորական աշխատանքների կատարման ժամկետների կրճատմանը, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների ներդրմանը, խթանում գիտնականների, մասնագետների, նորարարների և արտադրության առաջավորների ստեղծագործական ակտիվությունը։ ԳՏԻ-ն գիտության, տեխնիկայի ու առաջավոր փորձի նվաճումների արդյունավետ ներդրումը և գործնական պայմաններում դրանց հավաստիության ստուգումն ապահովող կարևորագույն կապակցող օղակ է։ ԳՏԻ-ի արդյունավետ օգտագործմամբ ու տարածման արագությամբ են մեծ չափով պայմանավորված գիտատեխնիկական առաջընթացի տեմպերը։ Հետազոտությունների, մշակումների արդյունքները որքան արագ հայտնի դառնան գիտնականների ու մասնագետների լայն շրջաններին, որքան լրիվ օգտագործվեն դրանք, այնքան մեծ կլինի ժողովրդական տնտեսության արդյունավետությունը։

Ներկայումս ԳՏԻ-ն վերածվել է ինքնուրույն ժողովրդատնտեսական բնագավառի, որի խնդիրների լուծման պարտականությունները դրված են գիտատեխնիկական ինֆորմացիայի նորաստեղծ համապետական համակարգերի վրա։ Նրա օղակներից մեկն էլ Հայկական ՍՍՀ ԳՏԻ-ի հանրապետական համակարգն է, որն ընդգրկում է հանրապետության տարածքում գտնվող ձեռնարկությունների ու կազմակերպությունների ԳՏԻ-ի 345 մարմիններ։

ԳՏԻ-ի հանրապետական համակարգում առաջատար կազմակերպության պարտականությունները կատարում է գիտատեխնիկական ինֆորմացիայի և տեխնիկատնտեսական հետազոտությունների հայկական գիտահետազոտական ինստիտուտը։ Ինստիտուտն օգնում է հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական նորագույն նվաճումների ներդրմանը, հանրապետության ձեռնարկությունների ու կազմակերպությունների, դիրեկտիվ և



պլանային օրգանների, ինչպես և առանձին մասնագետների աշխատանքի արդյունավետության բարձրացմանը, կատարելագործում այն ձևերն ու մեթոդները, որոնցով ինֆորմացիան հասցվում է սպառողներին և առաջին հերթին՝ նպատակային կոմպլեքս ծրագրեր ու կարևորագույն գիտատեխնիկական պրոբլեմների գծով կատարվող պլաններ իրագործող կազմակերպություններին։ Դրա գործունեության նպատակն է նաև նպաստել աշխատանքի գիտական կազմակերպման և արտադրության կառավարման ու որակի բարձրացման առաջավոր մեթոդների ներդրմանը, գիտատեխնիկական ինֆորմացիայի համակարգի պրոցեսների ավտոմատացմանը, գիտատեխնիկական պրոպագանդայի կազմակերպմանը։ Այն հետամտում է նաև ստանալ այնպիսի տվյալներ, որոնք հնարավորություն կընձեռեն սահմանելու գիտության ու տեխնիկայի առանձին ուղղությունների զարգացման միտումները, ինչպես նաև հանձնարարականներ նախապատրաստել հանրապետության ժողովրդական տնտեսության կարևոր հարցերը լուծելու համար։

Գիտատեխնիկական հեղափոխության արդի պայմաններում ավելի են մեծանում ԳՏԻ-ի դերն ու պատասխանատվությունը, առավել բարդ ու վիթխարի են դառնում նրա առջև ծառացած խնդիրները։ Ներկա ժամանակաշրջանում գիտատեխնիկական ինֆորմացիայի մարմինների գործունեության նպատակն է ըստ ամենայնի աջակցել այն կարևոր ու կենսական խնդիրների լուծմանը, որոնք առաջադրել է ՍՄԿԿ XXVI համագումարը. դրանք հիմնավորված են նաև ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թթ. և մինչև 1990 թ. ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում։ Այդ խնդիրներից են և գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների հետևողական ներդրումը, դրա արդյունավետության բարձրացումը։ Այդ առումով հատկապես կարևորվում է նպատակային կոմպլեքս ծրագրերի շրջանակներում կատարվող հետազոտությունների ու մշակումների ժամանակին ու բարձրորակ ինֆորմացիոն ապահովումը։

Ներկայումս արտադրության մակարդակը պայմանավորված է ո՛չ միայն տեխնիկական ու տնտեսական բազայով, այլև, այսպես կոչված, ինֆորմզինվածությամբ։ Դրա պատշաճ կազմակերպումը խթանում է գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը և էկոնոմիկան ինտենսիվ զարգացման ուղու վրա փոխադրելուն։ Գիտատեխնիկական ինֆորմացիայի պետական համակարգին առաջադրվող խնդիրներն են՝ կազմակերպչական ֆունկցիոնալ կառուցվածքի, ինֆորմացիոն սպասարկման կատարելագործում, ավտոմատացված համակարգերի ցանցի ստեղծում, ինֆորմացիայի, գրադարանային և հրատարակչական գործի ստանդարտների համակարգի մշակում և ներդրում, գիտատեխնիկական ինֆորմացիայի մարմինների փոխհամագործակցություն ու մերձեցում, տրնտհաշվարկային գործունեության ծավալում։

ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի 1982 թ.՝ «Հայկական ՍՍՀ-ում գիտատեխնիկական ինֆորմացիայի վիճակի և դրա կատարելագործման միջոցառումների մասին» որոշման մեջ ամփոփվել են տասնմեկերորդ հնգամյակում ԳՏԻ-ի հանրապետական համակարգի գործունեության արդյունքները, առաջադրվել են նոր խնդիրներ, որոնք բխում են ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումներից։

ԳՏԻ-ի հանրապետական համակարգի հետագա զարգացման գլխավոր ուղղությունը դրա բոլոր օղակների ծառայությունների աշխատանքի արդյունավետության հետագա բարձրացումն է՝ սպառողներին առավել բարձրորակ, օպերատիվ ինֆորմացիոն սպասարկման միջոցով։ Այդ համակարգի գործունեության կատարելագործումն ամենից առաջ նախատեսում է հստակ կազմակերպչական-ֆունկցիոնալ կառուցվածք, որը մեզ մոտ հիմնականում ստեղծված է։ Այն ներկայացված է հանրապետական, միութենական-հանրապետական և միութենական ենթահամակարգերից բաղկացած երեք մակարդակներով։ Ինֆորմացիոն ցանցում ընդգրկված են հանրապետության գրեթե բոլոր մինիստրություններն ու գերատեսչությունները։ Բացառություն են կազմում ար-

դարանային և հրատարակչական գործին վերաբերող 49 ԳՈՍՏ և գիտամեթոդական այլ փաստաթղթեր:

ԳՏԻ-ի մարմինների առջև ծառացած հաջորդ խնդիրը տնտհաշվարկի սկզբունքների ներդրումն է ինֆորմացիայի մարմինների գործունեության ոլորտում: Այս խնդիրն առաջադրվել է ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թ.՝ «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» որոշմամբ:

Տնտեսական հաշվարկը ինֆորմացիայի սպառողների հետ ԳՏԻ-ի մարմինների հետադարձ կապի արտացոլումն է: Այն ինֆորմացիայի ծառայությանը նպատակամղում է հանձնարարված աշխատանքները և կարևոր առաջադրանքները սահմանված ժամկետներում և բարձր ցուցանիշներով ու որակով կատարելու, միաժամանակ իրականացնելով ռեսուրսների բոլոր տեսակների առավելագույն խնայողության և ինֆորմատորների աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ աճ:

Գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեն 1981—1985 թթ. համար հաստատել է ԳՏԻ-ի ավտոմատացված պետական համակարգի կազմի մեջ մտնող ինֆորմացիոն մարմինների տնտհաշվարկային գործունեության հիմունքների մշակման գիտահետազոտական ծրագիրը, որի կատարողներից մեկը մեր ինստիտուտն է: Դրանով նախատեսվում է տնտհաշվարկային գործունեության կատարելագործման վերաբերյալ մի շարք մեթոդական ու նորմատիվային փաստաթղթերի մշակում: Կոմիտեն արդեն հաստատել է ԳՏԻ-ի մարմինների կողմից ինֆորմացիոն արտադրանքի և մատուցվող ծառայությունների նախապատրաստման տեխնոլոգիական պրոցեսների ցանկը և ինֆորմացիոն գործունեության հաշվառման փաստաթղթերի տիպային ձևերը:

ՍՄԿԿ XXVI համագումարի և նրան հաջորդած պլենումների՝ ԳՏԻ-ի մարմիններին առաջադրած խնդիրների ժամանակին ու պատշաճ մակարդակով լուծումը կապահովի ինֆորմացիոն սպասարկման բարձր որակը և օպերատիվությունը, ինչպես և հնարավորություն կընձեռի ստեղծելու ԳՏԻ-ի ավտոմատացված կենտրոնների ցանց:

---



# ԱՇԽԱՏԱՎԱՐՁԻ ԿԱՐԳԱՎՈՐՄԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԸ ՀՈՒՆԳԱՐԻԱՅՈՒՄ

**Կ. ԹԵՐԼԵՄԵԶՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ, էկոնոմիկայի և ողջ հասարակական կյանքի կառավարման դրական փորձի փոխանակումն այսօր դարձել է համաշխարհային սոցիալիզմի հետագա հաջողությունների կարևոր ռեզերվ: Ահա թե ինչու միմյանցից սովորելու կոչը՝ վերցնել ամենալավագույնն ու առաջավորը, չկրկնելով սխալները, ՍՄԿԿ XXVI համագումարում հնչեց հատուկ ուժով և համոզչությամբ:

Ռեալ սոցիալիզմը, նրա տնտեսական բազիսն ու քաղաքական վերնաշենքը սոցիալիստական ընկերակցության երկրների ժողովուրդների կոլեկտիվ ստեղծագործության արդյունքն է, որոնց ղեկավար և ուղղություն տվող ուժը մարքս-լենինյան կուսակցություններն են:

ՍՄԿԿ XXVI համագումարն անդրադարձավ պլանային տնտեսավարման և սոցիալական զարգացման ասպարեզում սոցիալիստական ընկերակցության մի շարք երկրների արժեքավոր փորձին: Հիշատակվեցին այն դրականն ու ուսանելին, որ ձեռք են բերվել մասնավորապես Հունգարիայում գյուղատնտեսական արտադրության մեջ տնտեսական մեխանիզմի կատարելագործմամբ, էկոնոմիկան ինտենսիվ զարգացման ուղու վրա փոխադրելու պրոբլեմի լուծման առնչությամբ:

Աշխատանքի արդյունավետության և որակի ըստ ամենայնի բարձրացումը սոցիալիստական երկրների ժողովրդատնտեսական գլխավոր խնդրի՝ աշխատավորների բարեկեցության բարձրացման հիմնական միջոցն է: Հայտնի է, որ ինտենսիվացումը ենթադրում է էական փոփոխություններ ինչպես տնտեսական կառավարման այժմյան համակարգում, այնպես էլ ժողովրդական տնտեսության ճյուղային կառուցվածքում, նրա տեխնիկական հագեցվածության մեջ: Այս խնդիրների լուծման գլխավոր ուղին տնտեսական մեխանիզմի կատարելագործումն է, որն ըստ էության չի հանգում սոսկ պլանավորման, տնտեսական խթանման և կառավարման կազմակերպման միջոցառումների իրականացմանը, ուղղված միայն «նեղ, գործնական» իմաստով հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը, այն միաժամանակ ներազդում է կարևորագույն սոցիալ-տնտեսական հարաբերությունների կատարելագործման վրա:

Հատկանշական է, որ եղբայրական երկրների տնտեսական կյանքի տարբեր կողմերի ամուր կապերի շնորհիվ ցանկալի արդյունքներ կարելի է ձեռք բերել միայն փոխհամաձայնեցված սերտ գործողություններով: Սոցիալիստական երկրների տնտեսության կառավարման և կազմակերպման փորձի ուսումնասիրումն ու փոխանակումը նպաստում են տնտեսական մեխանիզմների տարբեր կառուցվածքների մերձեցմանը՝ բացահայտելով միջազգային արտադրական և գիտատեխնիկական կոոպերացման լրացուցիչ հնարավորություններ:

Արդյունաբերության մեջ տնտեսհաշվարկային հարաբերությունների կատարելագործման տեսակետից արժեքավոր է Հունգարական Ժողովրդական Հանրապետությունում կիրառվող ըստ աշխատանքի վարձատրման փորձը։

ՀԺՀ-ում մշակված են աշխատանքի վարձատրության չորս բնորոշ սկզբունքներ, որոնցից առաջինն աշխատավճարի նորմատիվների գործողության երկարատևությունն է։ Վերջինիս նպատակն է, ժամանակի առումով, ապահովել կայուն աշխատավարձը և ձեռք բերված արդյունքներին համապատասխան, ինչպես և արտադրապրոցեսում տնտեսված միջոցների հաշվին անմիջական արտադրողների նյութական խրախուսումը՝ նրանց շահագրգռելու նպատակով։ Երկրորդ սկզբունքն աշխատանքի գնահատումն է պայմանական զուտ արդյունքի ցուցանիշով՝ նախորդ տարվա փաստացի և պլանային մակարդակի համեմատությամբ։ Հաջորդը՝ աշխատավարձի ռեզերվային ֆոնդերի ստեղծումն է, որն ապահովում է միջոցների հուսալիությունը։ Վերջապես, չորրորդ սկզբունքը ձեռնարկությունների եկամուտների տարբերակումն է, որը ևս աշխատավարձի ֆոնդի, միջին աշխատավարձի հարկման մեխանիզմի կարգավորման արդյունք է։ Նշված սկզբունքների շրջանակներում կիրառվում են աշխատավարձի ֆոնդի կարգավորման տարբեր մեթոդներ։ Առավելությունը տրըվում է պայմանական զուտ արդյունքի աճով պայմանավորված նրա դինամիկայի նորմատիվային պլանավորմանը, քանի որ այդ մեթոդն ավելի լայն հնարավորություններ է ընձեռում կենդանի աշխատանքի ծախսումների տնտեսման խնդրի լուծման առումով։ Այս մեթոդի կիրառումը նկատելիորեն շահագրգռում է ձեռնարկություններին՝ կրճատելու զբաղվածների ավելորդ թվաքանակը։

Այսպես կոչված «աշխատավարձի մասսայի» (ֆոնդի) կարգավորումը մեծ տարածում գտավ և 1980 թ. ընդգրկեց ձեռնարկությունների ավելի քան 80 տոկոսը։ Նշված սկզբունքների գործնական կիրառումը վերլուծելիս ուշադրության են արժանի հետևյալ պարագաները։ ՀԺՀ-ում կարգավորող նորմատիվների կայունության ապահովումը լուծվեց օրենսդիր կարգով՝ դրանց տարբերակման ուղիով։ Ձեռնարկությունների գերակշռող մասի համար աշխատավարձի ֆոնդը կարող է աճել 0,4 տոկոսով՝ «աշխատավարձի զարգացման ցուցանիշի»[1] յուրաքանչյուր 1 տոկոսի դիմաց, շինանյութերի արդյունաբերության մեջ՝ մինչև 0,5 տոկոսի չափով, նույն պայմանի դեպքում, իսկ սննդարդյունաբերության և մի շարք այլ ճյուղերում՝ մինչև 0,6 տոկոսով։

Այսպիսով, առավել մեծ աճի դեպքում բոլոր ձեռնարկությունների համար սահմանված են պարտադիր, շահույթից հարկվող մասհանումների միասնական դրույքներ 150, 200 և մինչև իսկ 300 տոկոսի չափով՝ թույլատրելի սահմանի գերազանցման աստիճանի համեմատ։ Այս մեթոդի կիրառման տարիներին, սկսած 1973 թ., բազային ցուցանիշի բովանդակությունը փոփոխություն չի կրել, որի աճը պայմանավորում է աշխատավարձի ֆոնդի դինամիկան։ 1980 թվականից շահույթից հարկվող միջոցներից սկսեցին հանել արտադրաֆոնդերի դիմաց կատարվող վճարումները և բանկային օպերացիաների հետ կապված ծախսերը։ Արտադրաֆոնդերի դիմաց վճարումների վերացումը, կենդանի և առարկայացած աշխատանքի տեսակարար ծախսումների անհամապատասխանության հարթեցման նպատակով կատարվող միջոցներից մեկն էր։ Աշխատավարձի ֆոնդից կատարվող վճարումների տեսակարար կշռի մեծացումը, որն այժմ կազմում է դրա գրեթե 35 տոկոսը և աշխատանքի միջոցների վերարտադրության արժեքի էժանացումը ոչ թե սկզբնական, այլ մնացորդային արժեքից դրա գանձման ուղիով, իսկ ի վերջո, դրանցից լրիվ հրաժարումը նպատակամղված են արտադրության տեխնիկական բազայի նորացման տեմպերի արագացմանը, որը, ինչպես հայտնի է, աշխատանքի արտադրողականության բարձրացման հիմնական գործոնն է։

Դրա հետ մեկտեղ, վերջին տարիների համար բնորոշ են աշխատավարձի ռեզերվային ֆոնդերի ձևավորման և հարկման համակարգերում կատարվող մասնակի փոփոխությունները, որոնք ուղղված են միջին աշխատավարձի, աշ-

---

[1] Այսինքն՝ պայմանական— զուտ արդյունքի ցուցանիշի։



խատավարձի ֆոնդի և ձեռնարկությունների եկամուտների տարբերակման
կարգավորմանը։ Այս փոփոխություններում նկատվում են երկու միմյանց հա-
կադիր միտումներ։ Մի կողմից, աճել են շահույթից մասհանումների հար-
կային դրույքները, որն ըստ էության աշխատավարձի մասսան պայմանավո-
րող ցուցանիշի հիմնական բաղադրամասն է, 1979 թվականի 36—40 տոկոսից
այն 1980 թ. աճել է մինչև 45 տոկոսի։ Ե՛լ ավելի խիստ պայմաններ են առա-
ջադրվում պահեստային ֆոնդի օգտագործմանը, որն այժմ ստեղծվում է բո-
լոր ձեռնարկությունների համար՝ շահույթից մասհանումների միասնական
նորմատիվով։ 1979 թվականին այդ նորմատիվը 25 տոկոսից իջեցվեց մինչև
15 տոկոսի, միաժամանակ լրացուցիչ չհարկվող աշխատավարձի ավելացման
նպատակով դրա միջոցների օգտագործումը սահմանափակվեց մինչև 3 տոկո-
սի չափով, իսկ 1980 թ.՝ մինչև 2 տոկոսով։ Ընդ որում ձեռնարկությունը պար-
տավոր է դրանց դիմաց հարկ վճարել գալիք տարում և փոխհատուցել ռեզեր-
վային ֆոնդից ստացված միջոցները։ Սա հարցի մի կողմն էր, մյուս կողմից,
նկատելիորեն բարձրանում է միջին աշխատավարձի չհարկվող տարեկան աճի
վերին սահմանը։ Աշխատավարձի «հակակարգավորման» այս մեխանիզմը
գործում է տնտեսական խթանման ընդհանուր համակարգում, որտեղ սկըզբ-
նական շրջանում թույլատրվում էր աշխատավարձի մակարդակի միայն 3
տոկոսի բարձրացում՝ առանց հարկ վճարելու պարտավորության։ Հետո դրույքի
մեծությունն աստիճանաբար ավելացավ և վերջին տարիներին եռապատկվել
է՝ կազմելով 9 տոկոս, բացի այդ, կայունացվել է հարկման տոկոսը՝ աշխա-
տավարձի բարձրացման սահմանված աճի գերազանցման դեպքում։ Ներկա-
յումս այդ 9 տոկոսից բարձր աշխատավարձի ողջ հավելաճը հարկվում է 150
տոկոս կազմող հարկի միասնական դրույքով։
Երկու միտումներն էլ բացատրվում են բազմաթիվ պատճառներով։ Նշենք
դրանցից մի քանիսը։ Օրինակ, ներմուծվող հումքի և նյութերի համաշխար-
հային շուկայական գների բարձրացման հետևանքով առաջացած արտաքին
առևտրի պայմանների վատթարացումը, տնտեսության համեմատաբար դան-
դաղ հարմարեցումը և վերափոխումը նոր շուկայական պայմաններին համա-
պատասխան, արտադրության արդյունավետության անբավարար մակարդակը,
և, որպես անմիջական հետևանք, արտահանման թույլ մրցունակությունը։ Այս
բոլորը հանգեցրին հասարակական արտադրական ծախքերի զգալի ավելաց-
ման, որն ինքնըստինքյան բացասական երևույթ է։ Ստեղծված իրավիճակն իր
հերթին տարբեր դոտացիաների և պետական հատկացումների անհրաժեշտու-
թյուն առաջացրեց՝ անկախ աշխատանքի արդյունքից։ Այլ կերպ ասած, այս
ընթացքում ձեռնարկություններին տրամադրվող ֆինանսական օգնությունը
հաճախ փոխհատուցվում էր պետբյուջեի միջոցների հաշվին։
1977 թ. բյուջետային դոտացիաների տեսակարար կշիռը հասավ ռեկոր-
դային մեծության և ձեռնարկությունների ընդհանուր շահույթի ծավալում կազ-
մեց 73 տոկոս։ Այս պայմաններում նկատվեց նորմատիվային ֆինանսական
կարգավորման համակարգի թուլացում, արտադրության արդյունքների և աշ-
խատանքի վարձատրության միջև կապի խախտում։ Սա իր հերթին ձեռնարկու-
թյունների գերակշռող մասում առաջացրեց միջին աշխատավարձի մակար-
դակի համահարթեցում։
Այստեղ է, որ ամբողջությամբ դրսևորվեցին ռեզերվային ֆոնդերի գոր-
ծողության և հարկման համակարգերի առանձնահատկությունները։ Արտա-
դրության համեմատաբար ցածր արդյունավետություն ունեցող ձեռնարկու-
թյունները բյուջեից տրվող հատկացումների հաշվին կարող էին աշխատա-
վարձը բարձրացնել մինչև 6 տոկոսի չափով, իսկ դինամիկ և արդյունավետ
աշխատող ձեռնարկությունները հնարավորություն չունեին անցնելու այդ սահ-
մանը՝ հարկվող մասհանումների բարձր տոկոսի հետևանքով։ Այդ միջոցները,
որոնք աճող հարկի հետևանքով նպատակահարմար չէին օգտագործել աշխա-
տավարձը բարձրացնելու համար, կուտակվում էին ռեզերվային ֆոնդում, հե-
տագայում օգտագործելու միտումով, արդեն առանց հարկման։
Միջին աշխատավարձի և ռեզերվների գերպլանային աճի վրա ներգոր-
ծում էր մեկ հանգամանք ևս։ Աշխատավարձի ֆոնդի նորմատիվային պլանա-

Սկսած 1971 թվականից՝ ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով ՀԺՀ-ում անցել են բանվորների համար մասսայական տարիֆային և ԻՏԱ-ի ու ծառայողների վարձատրության միասնական պայմանների համակարգին, որն իր հերթին պայմանավորված է տնտեսության բոլոր ճյուղերում առավել բարձր հավասարակշռության ապահովման պրոբլեմի աճող նշանակությամբ, «Ա» և «Բ» խմբերի համաչափ զարգացման նկատառումներով, ինչպես նաև մասսայական սպառման ապրանքներ արտադրող ճյուղերի աճման տեմպերի արագացման անհրաժեշտությամբ:

Գիտատեխնիկական առաջընթացի արդի պայմաններում, երբ կարևորվում է աշխատողների որակավորման բարձրացումը՝ որպես արտադրողականության աճի էական գործոն և առավել մեծանում են տարբեր որակավորում ունեցող աշխատողների աշխատանքի արդյունավետության տարբերությունները, մեծանում է բանվորների և ծառայողների աշխատավարձի կախվածությունը որակավորման աստիճանից, պրոֆեսիոնալ փորձից և, իհարկե, վերջնական արդյունքից:

Աշխատանքի արդյունավետության տարբերությունները դիտվում են որպես մի շարք պարամետրերի, այդ թվում, պրոֆեսիոնալ հմտության, ընդունակությունների, գործարարության, կարգապահության անմիջական հետևանք: Որպես այդպիսին, դրանք հաշվի են առնվում միևնույն տարակարգի բանվորների տարիֆային դրույքների և միևնույն պաշտոնը զբաղեցնող ԻՏԱ-ի ու ծառայողների աշխատավճարների զանազանման միջոցով:

ՀԺՀ-ում բանվորների աշխատանքի վարձատրությունն իրականացվում է վեց տարակարգերով, որոնցից յուրաքանչյուրի համար կենտրոնացված կարգով որոշված են տարիֆային դրույքների միայն նվազագույն և առավելագույն չափերը: Ձեռնարկություններին իրավունք է վերապահված յուրաքանչյուր բանվորի համար սահմանել անհատական դրույք, հաշվի առնելով հիշատակված պարամետրերը: Ոչ վաղ անցյալում (ընդհուպ մինչև 1975 թ.) նվազագույն և առավելագույն դրույքների միջև խզումը կազմում էր 60—70 տոկոս, ընդ որում ամենացածր կարգի տարիֆային դրույքի առավելագույն չափը գերազանցում էր հաջորդող կարգի տարիֆային դրույքի նվազագույն սահմանը:

1976—1980 թթ. տարիֆային դրույքների կարգավորման ժամանակ այդ տարբերությունները կրճատվեցին մինչև 40—50 տոկոսի: Այնուամենայնիվ, հունգար տնտեսագետներից ոմանք այն կարծիքին են, որ այս համահարթեցումը չի նպաստում առավել մեծ բարդության աշխատանքների յուրացմանը և պրոֆեսիոնալ հմտության կատարելագործմանը: Բացի այդ, տարիֆային դրույքը սահմանված չափով կարող է վճարվել միայն արտադրական առաջադրանքների և ծառայողական պարտավորությունների լրիվ ու ամբողջական կատարման դեպքում: Թերացումների ժամանակ որոշակի չափերով պահումներ են արվում: Օրինակ, բարձր և միջին օղակների ղեկավար աշխատողները կարող են զրկվել իրենց զբաղեցրած պաշտոնի համար նախատեսված աշխատավարձի, համապատասխանաբար՝ 25 և 15 տոկոսից, եթե ձեռնարկությունը ֆինանսական տարին վնասով է փակել և տնտեսավարման արդյունքներն անբավարար են:

Վերջին ժամանակներս նկատելիորեն ուժեղացել է տարիֆային համակարգի ներգործությունը աշխատուժը տվյալ արտադրությանն ամրացնելու նպատակով, ընդլայնվել է երկրորդ և երրորդ հերթափոխերում աշխատանքի ու ստաժի համար հատկացվող տարիֆային վերադիրների ընդգրկումը: Օրինակ, հաստատվել են այսպես կոչված հերթափոխային վերադիրներ՝ երկրորդ հերթափոխի համար 20 տոկոսի չափով, երրորդի համար՝ մինչև 40 տոկոս:

Այսպիսով, ուժեղանում է տարիֆային համակարգի խթանիչ ներգործությունն արտադրության զարգացման վրա: Ընդ որում Հունգարիայի փորձը ցույց է տալիս, որ չի կարելի հասնել ցանկալի արդյունքի միայն աշխատավարձի և, առհասարակ, եկամուտների որևէ մեկ տարրի կատարելագործմամբ: Միայն աշխատավարձի կազմակերպման բոլոր տարրերի կոմպլեքսային կատարելագործումը կհանգեցնի հասարակական արտադրության զարգացման և արդյունավետության բարձրացման վրա նրա ներգործության ուժեղացմանը:



# ԱԶԳԱՅԻՆ ՎԵՐԱԾՆՆԴԻ ՈՒՂԻՈՎ

**Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

ԱՍԻԱՅԻ ՍԻՐՏ, ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԻ ու ժամանակների քառուղի են անվանում Աֆղանստանը: Այս բնորոշումներից յուրաքանչյուրում ճշմարտության մասնիկ կա: Երկիրը գտնվում է Ասիայի մայրցամաքի գրեթե կենտրոնում, Մերձավոր Արևելքից և Միջին Ասիայից դեպի Հնդկաստան ու Չինաստան ձգվող առևտրական հնագույն ճանապարհի վրա: Աֆղանստանը, հիրավի, արևի ու լեռների երկիր է, տարվա մեծ մասը լեռնազանգվածներով հարուստ բնաշխարհը շռայլորեն ողողված է արևով:

Հարյուրամյակներ շարունակ մոլորակի այս կետը խռովահույզ վիճակ է ապրել. եղել են հաճախակի պատերազմներ, նվաճողների իրար հաջորդող ներխուժումներ, մարդկային վիթխարի զանգվածների տեղաշարժեր: Աֆղաններով բնակեցված հողատարածությունները դարեր ի վեր Արևելքի պետական խոշորագույն կազմավորումների՝ Արաբական խալիֆաթի, Ղազնևիների, Չինգիզ խանի ու Լենկթեմուրի, Սեֆյանների, Մեծ մողոլների տերությունների և Նադիր շահի ընդարձակ կայսրության մասն են կազմել: Եվ միայն XVIII դարի կեսերին է սկսվել աֆղանական ցեղերի պետական միավորումը:

Իր անկախությունը և ազատությունը պահպանելու համար աֆղան ժողովուրդը հաճախ է զենք վերցրել և պայքարել մեծ պետությունների դեմ: Անցյալ դարի սկզբին աֆղանական էմիր Դոստ Մոհամեդը փորձեր արեց միավորել երկիրը և փրկել այն օտարերկրյա նվաճողներից: Սակայն Անգլիան, իրագործելով իր ավանդական գաղութային քաղաքականությունը, սկսած 1838 թվականից մինչև 1919 թվականը Աֆղանստանի վզին փաթաթեց անգլո-աֆղանական պատերազմների մի ամբողջ շարք:

1838—1842 թվականների առաջին անգլո-աֆղանական պատերազմը սկսվեց 30 հազարանոց անգլիական բանակի ներխուժումով, որը գրավեց Ղանդահարը, Ղազնին ու Քաբուլը: 1841 թվականին Քաբուլում բռնկվեց ժողովրդական ապստամբություն, անգլիական բանակը մեծ կորուստ կրեց և ստիպված եղավ նահանջել ու թողնել Քաբուլը: Չնայած անգլիական պատժիչ ջոկատների ակտիվ գործողություններին, անգլիացիներն իրենց պարտված ճանաչեցին և հեռացան Աֆղանստանի սահմաններից:

1878—1880 թվականների երկրորդ պատերազմն սկսվեց 36 հազարանոց անգլիական բանակի ներխուժումով և Ղանդահարի ու Քաբուլի գրավմամբ: Սակայն 1879 թվականին Քաբուլում ժողովուրդը սպանեց անգլիական ռեզիդենտին, իսկ ապստամբները 1880 թվականին Ղանդահարի տակ ջախջախեցին անգլիական բանակը: Այս պատերազմում ևս անգլիացիները դիմեցին պատժիչ ջոկատների մարդասպան գործողություններին:

Ուինստոն Չերչիլը, որ այն ժամանակ «Թայմս» թերթի թղթակիցն էր ու հաղորդագրություններ էր ուղարկում աֆղանա-հնդկական սահմանից Լոնդոն, տեսնելով թե ինչպես անգլիական զինվորականները սպանում էին գերի աֆ-

# ԸՆԴՎԶՄԱՆ ԵՎ ՊԱՅՔԱՐԻ ԿՈՉՆԱԿԸ

## (ԴԱՆԻԵԼ ՎԱՐՈՒԺԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՐՈՒՍՏ հոգևոր կյանքը նոր իմաստավորում ու նոր արժեք ստացավ սովետական կարգերի օրոք: Դա զարգացման օրինաչափ մի պրոցես է, որ սոցիալիստական պետականության պայմաններում և խաղաղ գործարար մթնոլորտում ժողովրդին հասցրեց ինքնաճանաչման բարձր աստիճանի: Նա կարողացավ վերագնահատել իր անցած դարավոր ուղին, անցյալի հոգևոր գանձերը և տքնության ու տաժանքի գնով մեծ արժեքներ բերած իր այն երախտավորներին, որոնց գործն անզոր եղան մոռացումի փոշով ծածկելու ժամանակն ու դարերը: Եվ իրոք, այսօրվա բարձունքներից մենք զորու ենք արժանին հատուցելու մեր ժողովրդի մեծերին ու անմահներին, որոնց հոգևոր ժառանգությամբ առավել հարստանում է մեր սոցիալիստական իրականությունը:

Հայ ժողովրդի այդ անմահներից է Դանիել Վարուժանը, որի գրական ասպարեզ իջնելը XX դարի սկզբին հիշեցնում է Վահագնի ծնունդը: Նա, թերևս, ամենից առնական և կրակոտ բանաստեղծն է իր ապրած ժամանակաշրջանում: Նրա ամեն տողն այրվում է ներքին կրակով, այրվում՝ «սրտից կաթող» արյունով և այն անհաշտ պայքարի պաթոսով, որ նա մղում էր ստրկամտության, հետադեմ, խավարամիտ տարրերի, կղերականության, իմպերիալիզմի գաղափարախոսության և բռնապետական կարգերի դեմ: Նրա եղեգան փողի ձայնը հնչում է ողբերգության, վրեժի, տառապանքի և կռվի բազմազան, հարուստ և խորիմաստ ելևէջներով:

Որտեղի՞ց էր սնվում այս կրակը, ի՞նչն էր մղում նրա մրրկահույզ ոգին ստեղծագործական խիզախ որոնումների, ո՞րն էր այդ հոգեվոր վիթխարի էներգիայի ակունքը: Այդ ակունքը, ամենից առաջ, հարցականի տակ դրրված հայ ժողովրդի ֆիզիկական գոյությունն էր, 95—96-ի սրյան, սարսափի ու ցասման ներխուժումը սրտերում, ճակատագրական գալիքի առաջ կանգնած գրական նոր սերնդի տագնապները և մաքառման ուժը՝ հանուն ժողովրդի գոյատևման և ինքնահաստատման: Կարելի է ասել, որ այդ սերնդի մաքառման ուժը չափվում էր հայրենիքին մոտեցող այն վտանգի մեծությամբ, որ բանաստեղծական հայտնատեսությամբ շատերն զգում էին և ապրում էին ազգային մեծ ողբերգությունը:

Նրանք տեսնում էին «Օձ մը հսկա՝ գլուխը փուեն տնկած դուրս»...

Դանիել Վարուժանը ծնվել է 1884-ի ապրիլի 20-ին, Ալիս գետի ջրերի մոտ, ուռենիազարդ «ցորյանի ծովերում» կորած Սեբաստիայի Բրգնիք գյուղում: Տակավին «թիթեռնիկներ որսալու» հասակում հայրն ակամա որբացնում է նրան՝ պանդխտելով Պոլիս:

Նա դեռ նոր էր ոտք դրել գյուղի դպրոցը, երբ 1894-ի ջարդերը Սասունից հասնում են հայկական մյուս նահանգները (1895—96): Այդ օրերին մոր հետ գնալով Պոլիս՝ Վարուժանն իր հորը գտնում է բանտի ճաղերի ետևում՝ ուղղակի կմախքացած (**Հորս բանդին մեջ**): Դեռ այդ պահից, ինչպես գրել է բանաստեղծը հետագայում, ցասումը իր արյունի բաշն է թափահարում նրա կրծքի տակ: Եվ այդ անհետևանք չի անցնում: Ուսման ընթացքի հետ անում են ցասումն ու կսկիծը: Երկու տարի Պոլսի Մխիթարյան նախակրթարանում, ապա Քաղկեդոնի վարժարանում՝ Վարուժանն այդ զգացմունքի ներշնչանքով կատարում է գրական փորձեր: 1902-ին իր ուսուցչի՝ Ա. Քասգանդիլյանի հանձնարարականով նա ընդունվում է Վենետիկի Մուրադ-Ռափայելյան դպրոցը. «Նոր Մկրտիչ Պեշիկթաշլյան մը կը ղրկեմ. լա՛վ նայեցեք»— գրված էր նամակում:

1905-ին հայագիտական հարուստ պաշարով ավարտելով դպրոցը՝ Վարուժանը «Գեղունի» հանդեսում լույս է ընծայում իր բանաստեղծությունների առաջին շարքը՝ **Սարսուռները**, որ առանձին գրքով տպագրվում է 1906-ին: Նույն թվականին ընդունվում է Բելգիայի Գենտ քաղաքի համալսարանը: Բանվորական միջավայրի, առաջավոր գաղափարների ազդեցությամբ ձևավորվում է նրա աշխարհայացքը, իսկ տաղանդը հասունանում է գրական լայն ծանոթությամբ, իր խոսքերով՝ «Հոմերեն մինչև Մետերլինգ»:

1909-ին, ավարտելով համալսարանը, Վարուժանն ուղևորվում է հայրենի Սեբաստիա՝ ուսուցչության: Սեբաստիայում, Եվդոկիայում, ապա և Պոլսում, ուր սահմանադրության օրերին եղեռնական վախճան պիտի գտնեին գրական սերունդները, Վարուժանը ծավալում է գրական-հասարակական և մանկավարժական լայն գործունեություն: Նա հրատարակում է «Նավասարդ» տարեգիրքը, դառնում գրական վերածնության և գրական նոր հոսանքի պարագլուխ, պայքարելով այն ամենի դեմ, ինչ քարացած էր, հետադեմ, ինչ հետևանք էր շահագործման, կեղեքման և ազգային հալածանքի:

Համաշխարհային գրական մշակույթի գանձերով հարստացած Վարուժանը ամուր կապված էր հայրենի հողին. այդ է նրա մեծուվյան աղբյուրը: Նրա առաջին գործերից՝ **Սարսուռներից**, ակներև է այդ կապը: Դեմոկրատական գաղափարներով տոգորված մեծ նախորդների նման Վարուժանն իր քնարը կոչում է **ժողովրդի վերքերու գործիք** և այս սկզբունքով իջնում գրական ասպարեզ: 1909-ին, պետական հեղաշրջումից հետո, երբ Պոլսում նորից աշխուժացել էր հայ ազգային կյանքը, նա լույս ընծայեց իր քերթվածների նոր ժողովածուն՝ **Ցեղին սիրտը** խորագրով: Գիրքը բացառիկ ընդունելություն գտավ, ըն-մանվեց մինչև իսկ «ծագող արևին»: Ինչո՞վ բացատրել այդ ընդունելությունը:

**Ցեղին սիրտը** բերում էր ժամանակի շունչը, ժամանակի ձայնը և արդիական թեմատիկա: Նորովի են հնչում ազգային-ազատագրական շարժումների և եղեռնի արձագանքները: Վարուժանը երգում է **ծովածուփ արյան** մեջ կորած հայրենիքը, կրակի տրված հայ օջախների ծուխը: Եվ ազգային վիշտն այնքան մեծ էր, որ այդ ծխի փոխարեն բանաստեղծի սիրտն էր ելնում **եղեգան փողից**: Եվ, այսուամենայնիվ, նրա գիրքը ապշեցնում է լավատեսությամբ: Անկման փոխարեն՝ վերելք, վըհատության փոխարեն՝ հույս, հավատք և պայծառ գալիքի երազանք: Գիրքը գեղարվեստական նոր խոսք էր թե՛ ընդգրկման խորությամբ և թե գաղափարական հնչեղությամբ: Այստեղ զգացվում էր տոհմիկ ոգին և շունչը, ժողովրդական լեզվի և գրաբարի ընրքությունների ներդաշնակումը, բանաստեղծական **տողի հզոր շեշտը և առնական, մրրկաշունչ ընթացքը**: Պատահական չէ, որ ֆրանսիացի բանաստեղծ Լյուկ Անդրե Մարսելը քերթողի ստեղծագործության մեջ տեսել է արյունի ոգի, իսկ հեղինակին համարել է «արյունի ցեղից» սերված:

**Ցեղին սիրտը** բացվում է մի նախերգով, ուր մարմնացել է հայոց պատմությունը՝ հեթանոս դարերից, սոսյաց անտառի և եղեգնյա փողի առասպելից մինչև սուլթանական բռնակալության շրջանը, մինչև արյուն և ավեր, մինչև ընդվզում ու պայքար:

*Ու պայքա՜ր, պայքա՜ր, պայքա՜ր երգեցի.*
*— Ձեզ ընծա՜,* հայ մարտիկներ—
*Գրիչս եղավ անթրոց սրտերու հնոցի...*
*— Ձեզ ընծա՜,* քաջ մարտիկներ—
*Եղեգնյա գրչով վրեժ երգեցի.*
*Ընդ եղեգան փող բո՛ց ելաներ:*

Սա կյանքի ու մահու կռիվ է, պատմական բախտի դաժան ընթացքով թելադրվող, ժողովրդի ֆիզիկական գոյությունը փրկելու համար մղվող պայքար: Այդ պայքարը **Նեմեսիսում** դուրս է գալիս ազգային շրջանակներից և ստանում միջազգային սոցիալ-քաղաքական իմաստավորում: Այստեղ զգացվում է Եվրոպայի բանվորական շարժման շունչը, քաղաքի թեմայով գրած Վերհառնի որոշ երգերի հեղափոխական ոգին և Սիամանթոյի **Դյուցազնորեն** ցասման ու վրեժի տրամադրությունը: Վարուժանը ճանաչում է շահագործվող զանգվածների և ճնշված ժողովուրդների ներթաքույց ուժը: Հենց այստեղից էլ գալիս է նրա անհողդողդ հավատը և լավատեսական հայացքը ժողովուրդների հեղափոխական ուժի,

ընդվզման, հաղթանակի և ամբողջ աշխարհի իմպերիալիստական ընկրումների խորտակման հանդեպ: «Պաշտե դահանակե աչքերով աստվածուհին, ով ժողովուրդ,— պատվիրում է նա,— երբ բռնակալությունները կործանես, կործանե այլևս զինքն ալ, և դուն բարձրացիր իր պատվանդանին վրա՝ շուշան մը ձեռքիդ մեջ»:

Եվ ահա, ամեն տեղ փշրվում են շղթաներն ու բանտերը, կրակի են տրվում հերոսների արյունով ներկված կառափնարանները, որոնց բոցը ջահ է դառնում ըմբոստացած ամբոխների գիտակցության համար: Ամեն կողմից գալիս, ամբոխվում են ժողովրդական զանգվածները, և հարստահարված մարդկությունն է, որ գալիս է «գործարանեն, թիարանեն, բանտերեն»: Սրանք հեղափոխական պայքարի իրենց նմանը չունեցող պատկերներ են հայ նոր գրականության մեջ, որից երևում է, թե որքան լայն, դեմոկրատական, դասակարգային աշխարհայացք ուներ մեր դարասկզբի հայ դասական քերթողը:

*Գրոհ կուտան: Արյունոտ են ու քաղցած:*
*Դեռ բեկորներ շղթայի՝ զոր ջարդեցին,*
*մերկ ոտքերուն հետ ընդքարշ*
*սալահատակին շըռինդ, շըռինդ կը հնչեն:*

Վրեժի աստվածուհին՝ Նեմեսիսը, հանդես է գալիս իբրև բռնակալությունների դեմ ըմբոստացած աշխարհահեղաշրջման մի տարերք:

**Ցեղին** սիրտը ընդգրկում է կյանքը՝ **Բագինի** վրա դրված արյունոտ իրողությունից մինչև հայրենիքի վերածնությունը, մինչև ժողովրդական ցասման պոռթկումն ու պայքարը **(Կրկեսին մեջ)**, մինչև պարզ, աշխատավոր մարդկանց կռվում դյուցազնանալը **(Հովիվը)**: Եվ զարգացվում է այն գաղափարը, որ բռնակալությունը պատմականորեն դատապարտված է կործանման, ցեղասպանությունը՝ հավերժ անարգանքի: Համամարդկային այս աշխարհըմբռնումն արտացոլվում է սպանիչ, ցայտուն մերկացումներով և հատուցման գիտակցման փայլատակումներով:

Վարուժանը, ինչպես Սիամանթոն, իր նախորդներից առաջ է անցնում ո՛չ միայն **հատուցման** գաղափարի համաշխարհային հընչեղությամբ, արվեստի նոր որակով, այլև ազգային մեծ ողբերգությունը վհատության չհասցընելու, հայ պոեզիայում լալկանությանը վերջ դնելու սկզբունքով: Ջարդերն արտացոլող նրա պատկերները թեպետ հագենում են արյան, դիակների ու մորթված արշալույսների իրողությամբ, սակայն չեն նսեմացնում ազգային վշտի վեհությունը: Ընդհակառակը, պատկերները հագենում են բռնապետությանն ուղղըված սպանիչ մերկացումներով, ճնշված ժողովուրդների սրտից բխող ցասումով: Ահա սուլթան Համիդը գահի վրա, որի պատվանդանը շիրմաքար է, քանզի բարձրանում է հայ ժողովրդի արյան ծովի վրա, և արքայի թագը ծառայում է իբրև դդում՝ այդ ծովի մեջ լողալու համար **(Արյան հաղթանակ)**:

**Ջարդը** քերթվածի առթիվ Վարուժանը Ա. Չոպանյանին գրում է. «Ընդունեցեք— արցունքիս, ցասումիս և հեգնությանս մեկ խմորումն է՝ զոր ձեզի կուղարկեմ: Ամեն շեշտ սրտիս բախման հետ չափած եմ»: Հեղինակն անարգանքի սյունին է գամում եվրոպական մեծ տերություններին, որոնք, հակառակ խոստումների, իրենց ձեռքերը «Թեմզայի, Հռենոսի, Վոլգայի ջրերում» Պիղատոսի նման լվանում և մի կողմ են քաշվում: Եվ սկսվում է այն սև օրը, երբ

*...սատղերն ամբողջ թույն կաթեցին*
*Եվ բուրեցին ոսկրի հոտ*
*Վարդերն ամեն հովիտներու:*

Ստեղծվում է թուրքական ջարդարարներին մատնված անօգնական **Հայաստանի կերպարը**: Քերթողն զգում է այս թեմայի բարդությունը, արտահայտչական նոր ձևեր, անսովոր միջոցներ է որոնում: Ջարդերի կազմակերպիչը բնութագրվում է իբրև սպիտակ ձիու վրա նստած վայրագ ոգի, որի ապարոշում իբրև իժ ծվարել է Ալփասլանի հոգին: Նրա արշավանքը Տավրոսից մինչև Մասիս ուղեկցվում է դիակներից կազմված գոդգոթաներով, հըրկիզումներով և արյան ծովում լողացող դիակներով:

*...Ու եվրոպան դեմքն իր ետև դարձուցած*
*Կոպերը թաց կշփե—*
*Մեր ծուխեն աչքն իր բողի*
*Կսկծելո՞ւն համար լոկ:—*

Վարուժանի հակաիմպերիալիստական մտայնությունը զարգանում է գրեթե ամբողջ պոեզիայում: Նա դիմակազերծ է անում մարդկային արդարության կեղծ պաշտպաններին և նրանց թիկունքում կանգնած սատծուն: **Հայհոյանքի** մեջ երկնքի, տիեզերքի դեմ է ծառանում ծեր, աղոթասեր, ջերմեռանդ կինը: Իր հարսնության օրից նա տեսել է քաղց, արյուն, թալան, յոթ որդիների մորթվելը, երկինք և սատծուն հասնող գյուղերի ու քաղաքների արյան և բոցերի շառագույնը: Նա սատծուն կոչում է արյամբ մարմնաբույծ պյութոն, երկնածին վիշապ և ժայռից վար նետվելուց առաջ ցանկանում է իբրև ատելության թույն մեխվել նրա կողերի մեջ՝



*...Հանուն այն*
*ժողովրդին՝ որ քեզ սիրեց և առանց*
*քո օգնության խաչվեցավ:*

Վարուժանի մի շարք սիմվոլիկ-այլաբանական պատկերներում նույնպես արտացոլվում է ժողովրդի հոգևոր այն ուժը, որ ընդունակ է բարոյապես ջախջախելու բռնակալությունը, դատապարտելու ցեղասպանության ոճիրը և հեգնանքով ժպտալու մինչև իսկ մահվան դեմ **(Վիրավորը)**:

Հայ ժողովուրդը պայքարի ասպարեզ է մըտնում՝ բերելով իր խիզախությունն ու ուժը **(Կրկեսին մեջ)**: Ազգային ողբերգությունը վերանում է հերոսական պաթոսի, երազանքի և իրականության դրաման լուծվում է ընդվըզման, պայքարի, «ժանիքի դեմ ժանիք» հակադրելու սկզբունքով: Ծեփորելով համաժողովըրդական ապստամբությունը, հավատալով ժողովրդի հոգում անթեղված հեթանոս ուժին, Վարուժանը կոչ է անում խորտակել ոգու ըստըրկությունը, ոտքի կանգնեցնել ազգը, ինչպես «խումբ մը առյուծներու», և գյուղական խրճիթները մարտկոցների վերածել:

**1912 թվականին**, Կոստանդնուպոլսում լույս տեսավ Վարուժանի **Հեթանոս երգերը**, որով նա հիմն ի վեր շրջում է բարոյագիտական հին ըմբռնումները, նոր հունի մեջ դնում արևմտահայ պոեզիայի զարգացման պրոցեսը, հարուցելով բուռն հետաքրքրություն, տարիներ չըդադարող թեժ բանավեճեր, բանաստեղծին բերելով և՛ հետևորդներ, և՛ հակառակորդներ:

Վարուժանի ռոմանտիկական մեթոդի նոր որակը, այսպես կոչված՝ **նեոռոմանտիզմը**, իր հայ խոստովանությամբ, ստեղծվում էր հայկական և եվրոպական ազդեցությունների խաչաձևումով. «Վենետիկը իր Թիցիաններով, և Ֆլանտրը իր Վան-Տեգներով: Առաջինի գույները և վերջնույն բարբարոս իրապաշտությունը հորինած են վրձինս՝ զոր սնափառություն ունիմ թաթխած ըլլալ միմիայն հայրենի հողին որդան կարմիրին մեջ և ծովածուփ արյան»:

**Հեթանոս երգերում** նոր ձև ու բովանդակություն են ստանում պոեզիայի ավանդական մոտիվները: Սիրո թեման հագենում է օտար, կրքոտ, նորամուտ բարքերի մերժումով: Կրքոտ խորթ, նորամուտ բարքերի մերժումով: Կրքոտությամբ մերկացվում է անբարոյականության, ցոփության մեջ թաղված բուրժուական քաղաքը: Նա երգում է հասարակ, աշխատավոր կնոջը **(Տայիթա)**, գովերգում ժողովրդայնությամբ տոգորված պարզ ու բնական մարդկային հարաբերությունների, «Գեղեցիկի և Զորության» աշխարհը:

Հակառակ քրիստոնեական կեղծ բարեպաշտության, Վարուժանը, մերժելով բնականությունից շեղված արվեստը, արբեցումով քանդակում է կնոջ մարմինը՝ անտիկ արձանների նմանությամբ և ցույց տալիս նրա հմայքն ու ուժը: Նա պոեզիան հագեցնում է նյութականությամբ, կյանքի գույներով ու բուրմունքով: Վարուժանի պոեզիայի սիրո, երջանկության ու վայելքի մոտիվները հագեցած են հեթանոս արիության, ազատասիրության և ժողովրդայնության գաղափարով, որով նա հակադրվում է իր ժամանակի կեղծիքին ու այլասերմանը:

Մովսես Խորենացու հաղորդած ավանդության հենքի վրա հյուսված **Հարճը** պոեմը՝ մեծ կրքերի ու զգացմունքների դրսևորման ուժով, համամարդկային իդեալներով, ձևի ու բովանդակության ներդաշնակությամբ գրական մի գոհար է: **Հարճ**-ում մարմնավորվել են պետականության կորստից եկող **երազանքը**, թախիծը և ազգային հիշողության մեջ վերապրող **կարոտը**: Հայ ժողովուրդը դարեր շարունակ երազել է իր նախկին Զորությունը, Ուժը, Գեղեցկությունը, Փառքը և Վայելքը: Եվ որքան ծանր ու դաժան են եղել ժամանակները, այնքան մեծ են եղել ցնորքն ու թախիծը:

Պոեմի վիպական հյուսվածքը հագեցած է հայ պոեզիայում նմանը չունեցող վառ, շլացուցիչ գույներով: Պոեմի հիմքում դրված է նվիրական սիրո թեման՝ Տրդատի ու Նազենիկի սիրավեպը: Հաստատվում է սիրո ուժը, անդունդներ չճանաչող հզոր իշխանին և գերված կնոջը՝ Բակուրի հարճին միացնող զորությունը: Ազատության, գեղեցկության ու զորության գաղափարով է շնչում ողջ պոեմը: Սա մի պայքար է բուրժուական նեխվածության, կյանքի պայմանականությունների և սիրո վաճառքի դեմ: Սա ազատ, լիարժեք կյանքի, խիզախության ու մաքառման պահանջ է ո՛չ միայն սիրո, այլև հայրենիքի ազատության ու անկախության համար, ճակատագրական մի հարց, որ շիկացել էր հայրենիքի հոգեվարքի օրերին՝ առաջին համաշխարհային պատերազմից առաջ: Մասամբ նաև այդ նըպատակով պատկերվում են հեթանոս դարերի ռազմիկ ոգին, ռազմական-օլիմպիական մըրցույթները, որոնք կայծակների խաղը եկան տեղափոխելու երկրի վրա:

Դիմելով հին աստվածներին՝ հեթանոս երգիչները ցանկանում էին ոչ թե հեթանոսության, այլ ժողովրդի չեղծանված ոգու, ազգային կյանքի անաղարտության վերադարձը: Այսպիսով, հին աստվածների երգը **(Վահագն, Վանատուր, Մեռած աստվածներին և այլն)** փաստորեն աշխարհիկ կյանքի ու պայքարի երգն է, վերագնահատումն այն ամենի, ինչ իր արմատներով հասնում է մինչև պատմական անցյալի խորքերը: Անցյալի արժեքներով նրանք ձգտում էին գոտեպնդել սերունդներին,

նախապատրաստել գալիք ազատագրական մաքառումներին: Հեթանոս երգիչները երես էին դարձնում քրիստոնեությունից և իրենց զայրույթն ուղղում էին դրա դեմ: Վարուժանը, Սիամանթոն, Շանթը դատապարտում էին Քրիստոսին այն բանի համար, որ մարդուն դարձրել է նվազ, վտիտ, տխուր, տգեղ ու ստրկամիտ:

*Մարդն է ինկած գարշապարին տակ հսկա*
*Խուլ աստծու մը հրեա:*
**(Մեռած աստվածներուն)**

Քրիստոսի խաչի տակ փառաբանվում է մահը, ամրանում է օտարի լուծը, ամայանում է երկիրը: Մինչդեռ Վարուժանի փոթորկաշունչ մուսան, որ մարմնավորված է առասպելական «Բեգասի» կերպարում, տարված է ժողովրդի անմահության և լուսավոր գալիքի երազանքով, դեպի գագաթները, դեպի արևը, դեպի **Մարդու Ազատությունն** ընթանալու համամարդկային գաղափարներով:

Վարուժանի ստեղծագործական թռիչքները չամփոփվեցին միայն ազգային սահմաններում: Նրան մտահոգում էր նաև աշխարհի ոտնահարված, ճնշված ժողովուրդների, հարստահարվող աշխատավորության ճակատագիրը: Այս առումով եզակի երևույթ է **Գողգոթայի ծաղիկներ** շարքը: Արևմտահայ պոեզիայում առաջին անգամ դասակարգային համամարտության, հասունացող հեղափոխության սոցիալ-քաղաքական հողի վրա գծագրվեցին բանվորական զանգվածները՝ կապիտալիստական քաղաքի զարգացման որոշակի փուլում: Այստեղ գույները մռայլ են, արևազուրկ, որովհետև կյանքի միջով անցնում է «մահվան ճիվաղը»՝ այն դարձնելով գողգոթայի ճանապարհ:

Այս շարքում քերթողի հիմնական միտումը սոցիալական չարիքի մերկացումն է, հիմնական տրամադրությունը՝ ոչ թե անկումը, այլ լավատեսությունը և հավատը բանվոր դասակարգի պայքարի ու հաղթանակի հանդեպ: Շարքի հիմնական մոտիվը մերկացումն է, խարազանումը և դատապարտումը:

Վարուժանը սոցիալական չարիքի հողը համարում է կապիտալիզմը: Հենց պատմասոցիալական այդ հողի վրա են բուսնում գողգոթայի ծաղիկները՝ սոցիալական անհավասարության զոհերը— կարիքից ճարահատ վաճառքի ելնող կանայք, իրենց զավակին մեծատան շեմին լքող, ճակատագրին հանձնող մայրեր, հոգեկան տառապանքի ցավից գինեմոլ դարձած բանվորներ (**Ընկեցիկը, Սպասում...**): Կարիքի ու թշվառության ֆոնի վրա խոր կարեկցանքով, քնքշանքով ու դառնությամբ են գծագրվում նաև մեռնող բանվորի, «պատմության կարող» խաբված, անարգված, փողոց նետված կույսերի ապրումները, որոնք ի վերջո ձուլվում են բանվոր դասակարգի կյանքին ու պայքարին: Այդ քանդակի պես կարկառուն կերպարների միջոցով բանաստեղծն անիծում է «դարուս կավատ Մարդկության ոսկի Հորթերը բոլոր»:

Վարուժանի պոեզիայում ակնբախ է մեծ քերթողի սոցիալական խոր համակրանքը ճնշված ժողովուրդներին, ճնշված մարդկության և բախտից հալածվածների հանդեպ: Այստեղ պետք է նկատել, որ մինչև իսկ սիրո հարցում, որքան ատելությամբ նա մերժում է վերնախավի փարթամ կանանց, նույնքան գորով ու գուրգուրանք է ցուցաբերում գարեջուր վաճառող, նավաստիների քմայքներին ծառայող հոգնատանջ, ջլաքաց ու աղքատ աղջկա հանդեպ (Ո՛ Տալիթա): Բանաստեղծը պատրաստ է իր կյանքը, անունը և պատիվը տալ թշվառ, արևի տակ հազացող բանվորուհուն (**Բանվորուհին**).

*Կը սիրեմ քու անոթությունդ ու ծարավդ*
*Եվ ոսկորներդ ուժասպառ,*
*Ես կը սիրեմ կույս աղիքներդ ցամաքած,*
*Մազերուդ սուգն՝ ուսեդ վար:*

Դեպի աղբյուրը դիմող թոքախտավոր հիվանդների, կանանց, գործարանում հաշմված պատանիների, իրենց քայքայված դեմքերը չտեսնելու համար փակ աչքերով աղբյուրից ջուր խմող կույսերի հոգում, այնուամենայնիվ, փայլատակում է հույսը: «Արեգակի առողջ հոտը», աղբյուրի կարկաչը, բնությունը ներխուժում են նրանց մեջ և տարրալուծում հոգեկան ցավը՝ լույսի և հույսի (**Հրաշքին աղբյուր**):

**Գողգոթայի ծաղիկները** շարքում թանձր ու ճշգրիտ գույներով հառնում են մեծ քաղաքն ու գործարանը, բանվորական զանգվածները և նրանց ընթացքը դեպի «ամպրոպաշունչ» ապագան: Բանաստեղծական իրականությունը հագենում է գործարանային միջավայրի հույժ հավաստի նկարագրություններով: Ռեալիստական շունչը և գույների թարմությունը գալիս են կյանքից: «Գենտը բանվորական և մինևնույն անգամ կենսուրախ քաղաք էր: Ֆլաման կյանքն ու գեղարվեստը թերևս եղան պատճառ, որ արվեստս հակեր դեպի իրապաշտություն,— գրում է Վարուժանը:— Հոգիիս վրա քողի մը պես զգացած էի բանվորներուն աղաղակները մեկ կողմեն, ու մյուս կողմեն շվայտ ու արբեցող կյանքը»: Կապիտալիստական քաղաքը ներկայանում է անբարտավանի, անբարիշտի տեսքով: Գործարանը պատկերվում է իբրև մի կատարյալ դըժոխք (**Այս գեհեն մ'է, գեհեն մ'է**), ուր բանվորական բանակները հյուծվում, կմախքանում են՝ օդի ազատությունը երազելով և կուրանալով արեգակի կարոտից: Բանվորների տերը և օրենքը մեքենաներն են, որ հանդես են գալիս իբրև վիթխարի հրեշներ (**Մեքենաները**) և ոռնում են շների նման, կատաղորեն հափհափում, փշրում ոսկոր առ ոսկոր երիտասարդ, կտրիճ բանվորների: Դրանք դահիճի պես կարմիր են, անպատմելի եղեռն, կյանքը խավարի մեջ սպանողներ: Բանաստեղծի այս մերկացումները, կիրքը, ցասումն ուղղված են կապիտալիզմի դեմ: Անցյալում աղավաղել, ծածկել են ճշմարտությունը, չեն հասկացել Վարուժանի **Հեթանոս երգերի** դարավոր կյանքի երազը, չեն կարողացել, ինչպես քերթողն է ասել, ափի մեջ ամփոփել նրա արևաբեր մուսան (կամ Բեգասը) և ինչպես հարկն է գնահատել նրա գրական վաստակը՝ «տիեզերքին դեմ առ դեմ»: Սակայն արդեն մոռացվել են այդ գորշ գնահատականները: Այսօր Վարուժանը ներկայանում է իր ողջ մեծությամբ, իբրև կապիտալիզմի ամենահետևողական քննադատներից մեկը, իբրև համաշխարհային չափանիշներով ազատասիրական ամենառաջավոր հայացքների և իդեալների մարմնավորողը հայ պոեզիայում:

... Բանվոր դասակարգի կյանքի ու պայքարի թեմայում իրականությունն արտացոլվում է հաճախ հրաշապատում և իրապատում գույների, հակասությունների մեծարվեստ զուգորդությամբ: Մի կողմից՝ մորթվելու տարվող բանակներ, պատառուն շապիկով, փոշիով ու կուպրով ծեփված մարդկային ծով, մինչև գերեզման ծալված կռնակներ, վարդերի պես թորշոմած կույսեր, հացի պատառի կարոտյալներ, կորագլուխ գերիներ, մյուս կողմից՝ տիտան գլուխներ, հրձիգ բիբեր, սրտերի հզոր տրոփյուն, բանվորական բանակների սարսափ. ընդվզման որոտ: Հեթանոս երգն այստեղ դառնում է ժայռեր ճեղքող ռամիկ ուժի երգ, հսկաների թափոր, հուժկու բազուկների սպառնալի շարժում և սեղմվող բռունցքներ, ուր ձուլվում է ապագան (**Դադար**):

*Ատոնք բոլորը մրրի՛կ են, ատոնք բոլորը*
*կայծա՛կ են՝*
*Որոնք գոռան պիտի օր մ'ու Մարդկությունը*
*սարսեն:*

Ճիշտ է, ազատության զինվորները դեռ քիչ են՝ հազար, բայց «վաղը աստղերի չափ պիտ դառնան» և իբրև կարմիր փունջ ցիցի վրա պիտի նիզակեն «Գլուխը Ցարին կամ Սուլթանին.— բռնությունն» (**Վիրավորը**):

**Ո՛վ դար, ո՛վ դար...** բանաստեղծության մեջ Վարուժանը թափանցում է դարաշրջանի հեղափոխական շարժման բարդ պրոցեսի մեջ, մարգարեանում դարակազմիկ կանխատեսումներով: Կռահում է Ռուսաստանում խմորվող հեղափոխության համաշխարհային ազդեցությունը և ճակատագրական դերը ճնշված ժողովուրդների ու մարդկության համար: Նրա կանխատեսումները գեղարվեստորեն մարմնավորվում են Ֆինլանդիայից մինչև Կովկաս պայթող ռումբերի, Իսպանիայում, Պորտուգալիայում և Արևելքում բռնկված հուզումների, Ասիայի մատույցները լուսավորող «ծիրանափայլ կարմիրի», լքված, բայց ըմբոստ հայության և այլ պատկերներում: Ըմբոստության պոռթկումը քերթողը տեսնում է աշխարհի բոլոր ծայրերում, հասարակական կյանքի բոլոր օղակներում: Նրա հայացքի առաջ հառնում են արփագնդի նման նորոգված աշխարհը և իր դարը՝ «ճակատին» գրված **Արշալույս**:

*Պիտի աշխարհը ըլլե նորոգվա՛ծ ու գեղեցի՛կ*
*Եվ պիտ'ըլլա արժանի Արևին շուրջ*
*դառնալուն...*

Խաղաղության, աշխատանքի, հարազատ գյուղի կարոտի և ուրախության ներբողումն է **Հացին երգը** շարքը: Եթե Վարուժանի նախորդ գրքերի բանաստեղծական իրականության հակամարտություններում ծնվում են թշվառություն և վրեժ, ողբերգություն և պայքար, ապա այստեղ չկա տխրության ոչ մի հետք: Բացվող գարնան հետ հողի աշխատանքը, հացի ըստեղծման պրոցեսները՝ հերկից, ջրտուքից մինչև հունձը, կալը, աղորիքը և այլն, հագենում են ազատ ու խաղաղ հայրենիքի կենսավառ գույներով: Հայ գյուղացին հեռու է նախկին խեղճությունից: Հեթանոս այդ հսկան դաշտի հզոր զավակն է, որ իր թագը հյուսել է քրտինքով: Նրա կրծքի տակ բաբախում է հողի սիրտը և քայլերից սարսռում է երկիրը: Ցորյանով բարձած սայլի կատարին կանգնած մարդասեր այդ հսկաները ցանկանում են հողագործության ճանապարհով, բերրիությամբ ու առատությամբ լիացնել ո՛չ միայն իրենց ժողովրդին, այլև աշխարհին (**Անդաստան**):

Մարդասիրական այս լայն աշխարհայեցողությամբ Վարուժանը, ինչպես և առաջին եղեռնին ականատես նրա մեծ գրչակիցները՝ Սիամանթոն և Մեծարենցը անմահ էջեր են դրոշմել մեր պոեզիայի անդաստանում:

Վարուժանը ևս Սիամանթոյի նման ժողովրդի բախտը կապում է հայրենի հողի հետ: Եվ ստեղծվում է հեքիաթային մի աշխարհ, ուր միաձուլվում են իրականությունն ու երազանքը: Աշխատանքային ամեն շարժում դառ-

նում է երգ, գեղեցկություն, իդեալ: Հողագործի քուրը արտերի վրա բացվում է որպես արշալույս, նրա ցանած հունդերը թափվում են արտերի և սերունդների վրա՝ օրհնության պես: Գերանդին աշխարհածուփ ցորյանների միջից հանում է ոսկի, սայլերը տանում են ոչ թե ցորեն, այլ՝ հրդեհ և արև, տանում են քրտինքի և հույսի լեռնացած հեղեղ:

Բանաստեղծի այս շարքի երգերը հագեցած են ռոմանտիկական շնչով, ուստի և ամեն ինչ այստեղ նրան երևում է ծիածանի գունագեղությամբ, անպարագիծ, շքեղ ու հեքիաթային: Սիրո ու լավատեսության լույսի տակ հեռանում են բոլոր ստվերները՝ գյուղի տգիտությունը, կեղեքումը, օտարի լուծը: Նրա ռոմանտիկական արվեստում առաջին անգամ մեծ ընդգրկումով փարթամորեն ծաղկում է հողի ու մարդու պոեզիան: Նրա գյուղական պատկերները գծագրված են ուղղակի ռուբենսյան արվեստի հստակությամբ և արտահայտչականությամբ:

**Հացին երգ**-ում բնության, մարդու և աշխատանքի հովվերգական միասնության մեջ ամեն ինչ դառնում է շնչավոր, և աշխարհը՝ բարի ու հարազատ: Արվեստի ժողովրդայնության այս սկզբունքը կազմում է Վարուժանի գեղագիտության հիմքը: Արվեստի ժողովրդայնության հետ մեկտեղ պետք է նկատել Վարուժանի պոեզիայի հոգեբանական լայն ընդգրկումը: Հարկավ, նրան խորթ է դարասկզբի գրական սիմվոլիզմի սուբյեկտիվիզմը, յուրահատուկ սևեռվածությունը հոգեկան-հոգեբանական երևույթներին: Դրա փոխարեն նա ավելի հաճախ արտացոլում է շրջապատող առարկայական աշխարհը: Սակայն նա չի անտեսում հոգեկանը: Օրինակ, **Ցորյանի ծովեր**-ում՝ այդ հասուն արտերի համանվագում, չնայած բնանկարի առարկայական հագեցվածությանը, այն համակված է մարդկային խոր հոգեբանությամբ: Այստեղ տրոփում է հողագործի սիրտը, որ բաբախում է, կարծես, բանաստեղծության ամեն տողի մեջ:

Այսպիսով, Վարուժանի ստեղծագործության բազմազան թեմաների ու ձևերի սևեռակետում մարդն է, նրա հուզաշխարհը, հարազատ ժողովուրդը: Նրա հայացքը սևեռված է ժողովրդի մշակույթի, հոգևոր վերածննդի, քաղաքական ազատության, սոցիալական հավասարության, բարեկեցության և, միաժամանակ, աշխարհի խաղաղության ու լիության հարցի վրա:

*Արևելյան կողմն աշխարհի*
*խաղաղությո՜ւն թող ըլլա...*
*..Արևմտյան կողմն աշխարհի*
*Բերրիությո՜ւն թող ըլլա...*
*...Հյուսիսային կողմն աշխարհի*
*Առատությո՜ւն թող ըլլա...*
*...Հարավային կողմն աշխարհի*
*Պտղաբերում թող ըլլա:*

Մարդասիրության այս անհուն ոգով նա երազեց իր դարը տեսնել իբրև «Մարդկության հուսագեղ Առավոտ»: Սոսկ երազանք չէր դա, այլ քաղաքական լայն աշխարհայեցողությունից բխող հայտնատեսություն: Նա կռահեց Ռուսաստանում և այլ երկրներում խմորվող և առաջ ընթացող հեղափոխության հաղթանակը, որ այսօր, մեծ բանաստեղծի ծննդյան 100-ամյակին, դարձել է պատմականորեն վաղուց հաստատված իրողություն:

Վարուժանը և արևմտահայ մեծ գրողները զոհ գնացին եղեռնին (1915): Անավարտ մնացին Վարուժանի **Հայ հոմերագիրքը**, **Գինիի երգը**, **Սասմանց տունը** և գրական այլ հրաշալի մտահղացումներ: Սակայն այն, ինչ ստեղծեց Վարուժանը՝ **Սարսուռներից** մինչև **Ցեղին սիրտը** և **Հեթանոս երգերից** մինչև **Հացին երգը**, դարձավ նրա «անձեռակերտ հուշարձանը»:

**Հ. ՌՇՏՈՒՆԻ**
**Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**



# ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՋԵՐՄ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԸ

**Ն. Կ. Կրուպսկայան Լենինի մասին** ժողովածուում* ամփոփված են Վլադիմիր Իլյիչի կնոջ և զինակցի, նրա առաջին կենսագրի՝ Ն. Կ. Կրուպսկայայի հոդվածներն ու ելույթները: Ժողովածուն կազմել է Ն. Կ. Կրուպսկայայի անձնական քարտուղար և բարեկամ, կոմունիստների լենինյան գվարդիայի վետերան Վ. Ս. Դրիձոն. նրա գրչին է պատկանում և առաջաբանը:

Ժողովածուն սկսվում է Ն. Կ. Կրուպսկայայի՝ ՍՍՀՄ Սովետների II համագումարի սգո նիստում (1924 թ. հունվարի 26-ին) արտասանած հուզումնալի ճառով: Գրքի առաջին բաժնում Ն. Կ. Կրուպսկայան հանգամանորեն ներկայացնում է Իլյիչի բազմազբաղ առօրյան, հիշում է և վտարանդիության ծանր տարիները: Ճիշտ է, գրում է նա, այդ «տարիներին ապրում էինք հասարակ,— բայց միթե կյանքի բերկրանքը կուշտ և ճոխ ապրելն է»: Լենինյան ապրելակերպի սկզբունքները ելակետային ուղենիշ են նոր մարդու բարոյապես արդարացի, գեղեցկության օրենքներին համապատասխան պահանջմունքների դաստիարակման, նոր ապրելակերպի հաստատման համար կուսակցության ծավալած գաղափարախոսական աշխատանքում:

Ն. Կ. Կրուպսկայան ցույց է տալիս, թե որքան ամուր էր առաջնորդի կապը տարբեր ազգերի աշխատավորների հետ, ինչպես ուշի-ուշով ուսումնասիրում էր նա նրանց կյանքն ու կենցաղը, աշխատանքային պայմանները... Նադեժդա Կոնստանտինովնան բազմիցս նշում է, որ Իլյիչին հաճելի էր ձուլվել այդ բանվորական զանգվածներին, ապրել նրանց հոգսերով ու հետաքրքրություններով:

Իր կրակոտ խոսքով Իլյիչը կարողանում էր առինքնել ողջ լսարանը: Ունկնդիրները նրա համար «պրոպագանդայի օբյեկտներ» չէին սոսկ, այլ ծանր ապրումներ կրած, շատ բաների մասին խորհող կենդանի մարդիկ, բանվորներ ու գյուղացիներ, որոնք պահանջում էին ուշադրություն, փոխըմբռնում: Եվ այդ ո՛չ միայն բանավոր, այլև գրավոր խոսքում: Դեռևս աքսորում եղած շրջանում, արտասահման՝ Պլեխանովին և Աքսելրոդին ուղղած նամակներից մեկում նա գրում էր. «Ես ոչ մի բան այնքան չեմ ցանկացել, ոչ մի բանի մասին այնքան շատ չեմ երազել, որքան բանվորների համար գրելու հնարավորության մասին»:

Վ. Ի. Լենինը ոչ թե խրատում, «սովորեցնում» էր, այլ համոզում էր, բացատրում: Քաղքենիական բամբասանքները, անբովանդակ դատարկաբանությունները արհամարհող Իլյիչը բանվորներին, գյուղացիներին, ընկերներին վերաբերվում էր որպես հավասարը հավասարին: Նա հասարակ էր, սրտամոտ...

Ահա թե ինչպես է բնութագրել Իլյիչին նրա կյանքի ընկերուհին. «Լենինը մինչև հոգու խորքը հեղափոխական մարքսիստ էր և կոլեկտիվիստ: Նրա ողջ կյանքը, գործունեությունը ենթարկված էր մի մեծ նպատակի՝ սոցիալիզմի հաղթանակի համար ծավալված պայքարին: Եվ այդ իր դրոշմն էր թողել նրա բոլոր զգացմունքների և մտքերի վրա: Նրան խորթ էր ամեն տեսակ փոքրոգություն, նախանձ, չարություն, վրեժխնդրություն, սնափառություն»: Իլյիչը նոր մարդու՝ սոցիալիզմ կառուցող, սոցիալիստական հասարակարգի մարդու ամբողջական կերպարն է:

Աշխատավորներին, աճող սերնդին դաստիարակել Լենինի կյանքի ու գործունեության օրինակով, նշանակում է նրանց հոգում ձևավորել լենինյան խառնվածքի վսեմ հատկանիշներ— երկաթյա կամք, անդրդվելիություն, անհաշտելիություն, ատելություն հեղափոխության թշնամիների նկատմամբ:

Նադեժդա Կոնստանտինովնան հուզիչ էջեր է նվիրել Իլյիչի մանկության ու պատանեկության տարիներին:

Դաստիարակությունը Ուլյանովների ընտանիքում Վլադիմիր Իլյիչի մեջ մշակեց բարոյա-

* Н. К. Крупская, «О Ленине». Сборник статей и выступлений. Изд. пятое, М., Политиздат, 1983 г.

էսթետիկական, քաղաքական-կազմակերպական կուռ համոզմունքներ ու սովորույթներ: Հոգատարությունն ու կարեկցանքը ընտանիքում միմյանց, այնուհետև գիմնազիայում՝ դասընկերների նկատմամբ, նրբազգացությունն ու ուշադրությունը ընտանիքի կրտսերների և երախտագիտության զգացումը ծնողների, ավագների նկատմամբ դարձան նրա բնավորության կարևոր հատկանիշները, որոնք և հանդիսացան նրա մարդասիրության, օբյեկտիվ անաչառության խթանները: Որքան ուսանելի, նույնքան այժմեական են Իլյիչի այս հատկանիշները: Ժողովածուի երկրորդ՝ **Լենինը և կուսակցությունը** բաժնում առաջնորդը ներկայացված է ո՛չ միայն որպես խոշորագույն տեսաբան, այլև հմուտ կազմակերպիչ:

Ն. Կ. Կրուպսկայան ցույց է տալիս Լենինի կատարած վիթխարի աշխատանքը «Իսկրան» իսկական կազմակերպչական կենտրոն դարձնելու մարզում: Իլյիչը չէր վախենում ամենօրյա մանր աշխատանքից, առանց որի չէր կարելի այն տարիներին որևէ բանի հասնել:

Ժողովածուի կենտրոնական գլուխներից մեկն է **Կուսակցության երկրորդ համագումարը**: Նադեժդա Կոնստանտինովնան հանգամանորեն լուսաբանում է համագումարի նախապատրաստման պատմությունը, ծրագրի շուրջ ծագած բանավեճերը և դրանց անհրաժեշտությունը: Այս առնչությամբ իսկ նա անդրադառնում է Լենինի **Ի՞նչ անել** ծրագրային աշխատությանը:

Կուսակցությունը պետք է լինի մարտական կազմակերպություն, նրա յուրաքանչյուր անդամ պետք է լինի անձնազոհ մարտիկ՝ պատրաստ ամենօրյա սովորական աշխատանքի և զենքը ձեռքին պայքարելու համար... առանց գաղափարական և կազմակերպական համաձուլվածության՝ չի կարելի ստեղծել մարտական կուսակցություն, ասում էր Լենինը:

1918 թվականին **Սովետական իշխանության հերթական խնդիրները** հոդվածում **Վ. Ի. Լենինը** նշում է, թե որքան կարևոր ու հրատապ է հեղափոխական պրոլետարիատին ղեկավարող կուսակցության կազմակերպիչների պատրաստումը: Ահա թե ինչ պետք է անել դրա համար. «Մենք մեր ճանապարհով կգտնենք՝ աշխատելով ըստ կարելվույն ավելի զգուշությամբ և համբերությամբ փորձել և ճանաչել իսկական կազմակերպիչներին, զգաստ միտք և գործնական ըմբռնողություն ունեցող մարդկանց, այնպիսի մարդկանց, որոնք սոցիալիզմին նվիրված լինելու հետ մեկտեղ ունակ են անաղմուկ (և հակառակ իրարանցման և աղմուկի) կարգավորել մեծ թվով մարդկանց ամրակուռ և համերաշխ համատեղ աշխատանքը սովետական կազմակերպության շրջանակներում: **Միայն** այդպիսի մարդկանց տասնապատիկ փորձելուց հետո, պետք է նրանց՝ ամենահասարակ խնդիրներից դեպի դժվարագույնները մղելով, առաջ քաշել ժողովրդական աշխատանքի ղեկավարների, կառավարման ղեկավարների պատասխանատու պաշտոններում: Մենք դա դեռ չենք սովորել: Մենք դա կսովորենք» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**. հ. 36, էջ 238): Լենինը հատկապես բացառիկ տեղ էր տալիս համագումարների կազմակերպմանը. նա գտնում էր, որ կուսակցական համագումարը բարձրագույն մարմինն է, համագումարում պետք է մի կողմ նետվի ողջ ավելորդը, ոչինչ չպետք է աքողել, ամեն ինչ պետք է բացահայտ ասել: Համագումարներին Իլյիչը միշտ խնամքով, հոգածությամբ էր պատրաստում իր ճառերը...

**Վ. Ի. Լենինը որպես պրոպագանդիստ և ագիտատոր** գլխում Կրուպսկայան ցույց է տվել Լենինին՝ որպես ագիտատորի **և** պրոպագանդիստի: Նրա բնորոշ հատկանիշներն են՝ համոզվածություն, ասելիքի խոր իմացություն և հստակ ձևակերպումներ, տեսությունը կենդանի իրականության հետ սերտորեն շաղկապելու ունակություն, կրքոտ, առինքնող խոսք:

Հետաքրքրական են Կրուպսկայայի հիշողությունները Լենին—խմբագրի մասին, որոնք ամփոփված են **Լենինը կուսակցական մամուլի խմբագիր և կազմակերպիչ** գլխում, ուր, ինչպես ինքն է խոստովանում, Լենինը ներկայացված է ոչ որպես խմբագիր ընդհանրապես, այլ որպես կուսակցական խմբագիր, կոմունիստ-խմբագիր, որը ձգտում է յուրաքանչյուր հոդվածում, յուրաքանչյուր դարձվածքում, յուրաքանչյուր բառի մեջ անցկացնել կոմունիստական գաղափարներ, ձգտելով լրագիրը, ժուռնալը դարձնել կոմունիզմի համար պայքարի զենք: Ահա թե ինչ է գրել Իլյիչը դեռևս 1905 թ. **Կուսակցական կազմակերպություն և կուսակցական գրականություն** հոդվածում. **Հրատարակչություն**ները և պահեստները, խանութներն **ու** ընթերցարանները, գրադարաններն ու տարբեր գրավաճառանոցներ, այդ ամենը պետք է դառնան կուսակցական, հաշվետու... Մենք կամենում ենք ստեղծել և կստեղծենք ազատ մամուլ ոչ թե միայն ոստիկանական առումով, այլև կապիտալից ազատ, կարիերիզմից ազատ առումով: Ավելին. բուրժուաանարխիստական անհատապաշտությունից ազատ իմաստով: Ընդհանրապես լրագրերի, մասնավորապես «Պրավդայի» մասին նա գրել է. «Լրագիրն ինքը պետք է փնտրի, ինքը ժամանակին գտնի և իր ժամանակին զետեղի հայտնի նյութը: Լրագիրը պետք է փնտրի և գտնի իրեն հարկավոր կայերը»: Այսպես կարելի է երկար շարունակել Վ. Ի. Լենինի մըշտապես այժմեական մտքերը մամուլի, գրականության հետ կապված ամենատարբեր հարցերի շուրջ, որ այնպես վարպետորեն ու տեղին քաղվածաբար բերել է Նադեժդա Կոնստանտինովնան:



Ն. Կ. Կրուպսկայայի հուշերն ու հոդվածները Վ. Ի. Լենինի մասին գրվել են գլխավորապես նրա մահից հետո, 1924—1939 թվականներին. 15 տարի, ավելի քան 70 հոդված, որոնցում նա արտահայտել է նաև կուլտուրական շինարարության գլխավոր հարցերի, այդ թվում և սոցիալիստական կարգապահության և աշխատանքային դաստիարակության ուղիների և միջոցների միաձուլման լենինյան գաղափարը, որն ամենևին չի կորցրել իր հրատապությունը:

Կուսակցության գաղափարադաստիարակչական աշխատանքում առաջատար խնդիրներից է ժողովրդական լուսավորության նպատակներից բխող աշխատանքի նկատմամբ կոմունիստական համոզմունքների ու հայացքների ձևավորումը, աշխատանքի նկատմամբ գիտակցական վերաբերմունքի դաստիարակումը. չպետք է մոռանալ, որ «կոմունիստական գաղափարայնությունը գիտելիքների, համոզմունքների և պրակտիկ գործունեության համաձուլվածքն է»: Հետաքրքրական են անող սերնդի ընդհանուր և պոլիտեխնիկական կրթությանը վերաբերող լենինյան մտքերի մեկնաբանությունները: Երիտասարդությունը պետք է սովորի կոմունիզմ, ասում է Կրուպսկայան, սակայն կոմունիզմ սովորելը չպետք է լինի սոսկ յուրացումը այն բանի, ինչ գրված է կոմունիզմի մասին: «Պետք է կարողանալ բոլոր գիտելիքները միավորել ամբողջական, մտածված ինչ-որ բանի մեջ, որը ծառայեր ամենօրյա և ամբողջական աշխատանքը ղեկավարելուն»:

Լենինը սովորեցնում է, որ տնտեսական շինարարությունը պետք է քաղաքականապես իմաստավորել, օգնել մասսաներին՝ հասկանալու տեղի ունեցող շինարարության նշանակությունը: Այդ նշանակում է միավորել մեկ ամբողջության մեջ աշխատանքի տնտեսական ու դաստիարակչական ֆունկցիաները, կոմունիստական կրթության և դաստիարակության սկզբունքները, սոցիալական, քաղաքական, էկոնոմիկական խնդիրների լուծման նպատակով:

Բնութագրելով սոցիալիստական հասարակության կառուցման գործում էկոնոմիկայի կարևոր դերը՝ Վ. Ի. Լենինը պլանը և աշխատանքային կարգապահությունը համարում էր «սոցիալիզմի ամբողջ տնտեսական շինարարության մեխը»:

Սովետական իշխանության առաջին տարիներին Լենինը բազմիցս է նշել, թե ինչպես գիտակցական վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ դաստիարակում է նոր կարգապահություն: Մեծ առաջնորդի արտահայտած այս մտքի մի նոր հաստատումն են ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան և 1983 թ. հունիսյան ու դեկտեմբերյան պլենումների նյութերը, որոնցում շեշտված է, որ գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը միայն այն ժամանակ կհասնի իր նըպատակին, երբ զուգակցվի կոնկրետ, մոտակա կենսական հանրօգուտ խնդիրների իմաստավորման, գործնական լուծման հետ: Ժամանակակից փուլում, ինչպես երբեք, չափազանց հրատապ է Լենինի ցուցումը— ուսման բոլոր խնդիրներն այնպես տնօրինել, որ ամեն օր ուզած գյուղում, ուզած քաղաքում երիտասարդությունը գործնականորեն լուծի ընդհանուր աշխատանքի այս կամ այն թեկուզ ամենափոքր, թեկուզ ամենահասարակ խնդիրը:

Աշխատանքային դաստիարակության գըլխավոր հատկանիշներից մեկը գիտակցական կարգապահությունն է, փոխադարձ վստահության, հարգանքի և ստեղծագործական, գործարար նախաձեռնության կարգապահությունը: Դեռ 1918 թվականին իր **Սոցիալիստական դաստիարակության իդեալները** հոդվածում Ն. Կ. Կրուպսկայան նշել է, որ «Երբ կարգապահության զգացումը դաստիարակվում է աշխատանքային պրոցեսում, այդ կարգապահությունը դադարում է լինել միայն արտաքին: Այդ ներքին կարգապահության զարգացումը շատ կարևոր է սոցիալիստական դպրոցում...»:

Գրքի երրորդ բաժնում, որ վերնագրված է **Լենինը սոցիալիստական շինարարության և կոմունիստական դաստիարակության մասին**, ամփոփված են Իլյիչի մտքերը աշխատանքի արտադրողականության, տեխնիկայի, վերահսկողության, արտադրական պրոպագանդայի, լուսավորության և ժողովրդական ուսուցչի մասին, ցույց է տրված նրա դերը պոլիտեխնիկական դպրոցի համար մղված պայքարում: Այս բաժնում Կրուպսկայան անդրադարձել է նաև Լենինի **Լավ է քիչ, բայց լավ** հոդվածին, կոմունիստական բարոյականության վերաբերյալ նրա արտահայտած մըտքերին:

Աշխատանքային ուսուցման վերաբերյալ Կրուպսկայայի խոհերը ևս բխում են լենինյան հայացքներից: 1932 թ. նա գտնում է, որ դըպրոցը պետք է ո՛չ միայն պոլիտեխնիկական բնույթի գիտելիքներ ու հմտություններ տա

սովորողներին, այլև այդ գիտելիքներն ու հմտությունները պետք է օրգանապես կապվեն երեխաների հասարակական աշխատանքի հետ, աշխատանքի ուսուցման, տեխնիկայի և գիտության համակողմանի ուսումնասիրության հետ: Նպատակ ունենալով դպրոցականներին նախապատրաստել արտադրության ոլորտի համար, պետք է նրանց մեջ արմատավորել ձգտում դպրոցն ավարտելուց հետո կանգնելու բանվոր դասակարգի և գյուղացիության շարքերում, շարունակելու բանվորական ավանդույթները, օգտակար լինելու մեր հասարակությանը:

Պետք է հասնել այն բանին, որ հանրակրթական, պոլիտեխնիկական աշխատանքային դպրոցն ավարտողը կարողանա դառնալ ռացիոնալիզատոր, առաջավոր բանվոր, լավ տիրապետի իր մասնագիտությանը: Ահա թե ինչու Կրուպսկայան այնպես բարձր էր գնահատում ստախանովյան շարժումը, շեշտում էր, որ ուսուցչությունը մեծ ուշադրություն պետք է նվիրի այդ շարժման պրոպագանդմանը:

Հմուտ մանկավարժ-տեսաբանը պրոլետարիատի մեծ առաջնորդին նվիրված իր հուշերն ավարտում է **խնչպես** և ինչ պատմել աշակերտներին **Լենինի մասին** գլխով: Սոսկ մանկությունը շատ քիչ է, անհրաժեշտ է պատմել Իլյիչի հոր մասին, որ վաթսունականներից էր և իր ողջ ժամանակը, ողջ ուժերը նվիրաբերեց գյուղացիների երեխաների համար դպրոցներ հիմնելուն: Պատմել կորովի ու քաջ կնոջ՝ մոր մասին: Պատմել ժամանակի իրադրությունները, ներկայացնել այն ողջ սոցիալական ու քաղաքական միջավայրը, դաստիարակությունը, որոնք Իլյիչին դարձրին մտածող, ո՛չ միայն հեղափոխության տեսաբան, այլև բոլորանվեր գործիչ:

Վիթխարի է **Ն. Կ. Կրուպսկայան Լենինի մասին** ժողովածուի գաղափարադաստիարակչական, իմացական նշանակությունը: Այն մեծապես օգնում է ո՛չ միայն լուսավորության բնագավառի աշխատողներին, այլև ընթերցող լայն հասարակայնությանը աշխատել ու ապրել լենինաբար:

**Գոհար ՄԱՆՎԵԼՅԱՆ**
**Խ. Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտի ընդհանուր մանկավարժության ամբիոնի ավագ դասախոս**

---




Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի 21.03.84 թ.: Ստորագրված է տպագրության 19.04.84 թ.: ՎՖ 04592: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ. Տպաքանակ՝ 16.482: Պատվեր՝ 776:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*

Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.